ԳԱԼՈՒՍՏ ՏԷՐ-ՄԿՐՏՉԵԱՆ



# ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ

Արտատպութիւն 1896 թ.-ի «Արարատի» Փետրուար եւ Ապրիլ համարներից.

ՀՐԱՄԱՆԱՒ

Տ. Տ. ՄԿՐՏՉԻ Ա.

Վեհափառ եւ Սրբազնագոյն Կաթողիկոսի

Ամենայն Հայոց

ՎԱՂԱՐՇԱՊԱՏ

Տպարան Մայր Աթոռոյ Ս. Էջմիածնի

1896

# ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ

## Ա

1877 թուին Ք. Պատկանեանը հրատարակեց Շիրակացու մեզ հասած երկասիրութիւնները «Անանիայի Շիրակունւոյ Մնացորդք Բանից» վերնագրով (Ս. Պետերբուրգ)։ «Արարատի» յաւելուածներում մտադիր եմ տալ հետզհետէ Շիրակացու այն գրուածքները և պատառիկները, որոնք չեն մտել Պատկանեանի յիշեալ հրատարակութեան մէջ։ Այս նոր հրատարակելիքները մասամբ բոլորովին անծանօթ են և մեր հին գրականութեան պատմութեան մէջ չմտած, մասամբ յայտնի են այս կամ այն բանասիրին (մասնաւորապէս Հ. Ալիշանին), բայց այսու ամենայնիւ հայագէտների մեծամասնութեան անմատչելի մնացած։ Ի մի ամփոփել այս հատուածները անհրաժեշտ է թէ լեզուաբանական, թէ պատմական և թէ այլ տեսակէտներից։ Քննադատութեան կմնայ սրանց վաւերականութիւնը հերքել կամ հաւաստել։

Առաջիկայ փոքրիկ երկասիրութիւնը վերագրում ենք մենք Շիրակացուն հիմնուելով մի հնագոյն ժողովածուի վրայ։ Այդ ձեռագիրը «Գէորգ Կաթողիկոսի Ցուցակի» համար 102-ն է, մի նշանաւոր և ամենաթանկագին հնութիւն։ Թուղթ, երկաթագիր, հայոց ՆԼ. (= 981) թուականի յիշատակարանով. իւր առաջին մասով դեռ աւելի էլ կանուխ գրուած, այն է՝ Հայոց ՆԻ. թուականին (= 971 Փրկչական), բազմաբովանդակ մի ձեռագիր։ Այս Զ-ի գլխաւոր յիշատակարանները արդէն հրատարակուած են Հ. Տաշեանի ձեռքով (Մանր Ուսումնասիրութիւնք, Հետազօտութիւնք և Բնագիրք, Վիեննա, 1895, եր. 202 և յաւելուած)։ Զ-ի մանրամասն նկարագրութիւնը դուրս կգայ մեր մատենադարանի «Մայր Ցուցակում»։ Շատ անգամ էլ դեռ մենք առիթ կունենանք վերադառնալ այս ձեռագրին՝ հրատարակելով նրա չհրատարակուած մասերը։ Ամբողջ ժողովածուն, սկզբից և վերջից թերատ, ունի ընդամենը՝ իւր այժմեան վիճակում՝ 383 յօդուած (ԾԱ—ՆԼԳ)։ Զ-ի սկզբից պակասում է 50 յօդուած (Ծ)։ ԾԱ—ՀԳ յօդուածները ամբողջապէս թւում են լինել Շիրակացունը։ Յամենայն դէպս եր. 5b ԾԳ-դ յօդուածի վերնագրում կարդում ենք Անանիայի անունը—«Անանիայի համարողի վասն ընթացից արեգական և այլն»։ ԾԴ, ԾԵ յօդուածների [illegible] պակասում են [illegible] պատառոտուն վիճակի պատճառաւ։ 8-դ թերթի ամբողջ ստորին կէսը չկայ։ 8b երեսի սկզբնաւորութիւնն է յօդուած ԾԶ «Հարցմունք և պատասխանիք յաղագս արարչութեանն» վերնագրով, որ և մնում է թերատ, ինչպէս ասացինք թերթի ստորին կիսի բացակայութեամբ։ 9-դ թերթից սկսւում է մեր հրատարակութիւնը, առանց վերնագրի և առանց յօդուածի թուահամարի (ԾԷ)։ Դժուար է ասել թէ արդեօք Զ-ի նախնական վիճակում այժմեան 8 և 9-դ թերթերը միայար շարունակութիւն էին կազմում։ Թերևս կար այդ երկու թերթերի մէջ մի ուրիշ թերթ էլ, որ այժմ պակասում է։ Զ-ի [illegible] համարները՝ ստորին լուսանցքներում՝ համեմատաբար նոր են և վերջին կազմողին են պատկանում։ Այդ ժամանակ Զ-ը արդէն այժմեան թերատ վիճակումն էր։ Ահա կազմողի նօտրագիր յիշատակարանը. «ԶՍիմէոն վարդապետն Ապարանցին յիշեցէք ի Քրիստոս, որ ետ կապել զգիրքս յիշատակ իւրն և ծնաւղացն իւրոց՝ հաւր Խաչատուրին և մաւր Նարընջին։ Թվ. ՌԼԴ. (Զ եր. 37a, ստորին լուսանցք)։ Այս այն Սիմէոն Ապարանցին է, որի Վիպասանութիւնն ունինք (տպ. Էջմիածնի, 1870)։ Այսպիսով մեր հրատարակութեան վերնագիրը հաստատապէս և՝ թերևս՝ սկզբնաւորութիւնը պակասում են։ Եր. 13b և յետոյ՝ մեր այս հրատարակածին անմիջապէս կից՝ հետևում են Անանիայի երկու ճառերը «Անանիայի Շիրակայնւոյ Համարողի» վերտառութեամբ։ Այդ ճառերը արդէն հրատարակուած են Պատկանեանից, եր. 4 և 15։ Այս ճառերին հետևում է (եր. 29a) դարձեալ մի փոքրիկ հատուած Անանիայից «Նորին Անանիայի» վերտառութեամբ։ Սրանով վերջանում է ժողովածուի Շիրակացուն վերաբերեալ բաժինը։

Այս համառօտ նկարագրութիւնից երեւում է, որ մեր հրատարակածը Զ-ում Անանիայի գրուածքներից քաղուած հատուածների շարքումն է, սկզբից թերատ՝ բայց վերջից անմիջապէս կից Անանիայի ճառերին։ Այս հանգամանքը կարող է մի հաւանական ապացոյց համարուել, որ այս գրութիւնն էլ Շիրակացու գրչին է պատկանում։

Այդ բանին երկրորդ ապացոյց կարող են համարուել գրութեան նիւթը և լեզուն։ Շատ տեղ նոյն իմաստները գրեթէ միեւնոյն բառերով կրկնւում են այս գրուածքի և Շիրակունու ծանօթ երկասիրութեանց մէջ։ Բայց վերջնական և աւելի դրական ապացոյց այս գրութեան Շիրակացունը լինելուն գտնում եմ ես նոյն հեղինակի գլխաւոր երկասիրութեան (Ցուց. Եբրէ. Հր. Պատ. եր. 34) մէջ։ Խօսելով լուսնի վրայ Շիրակացին իմիջի այլոց ասում է. «.. ըստ աստուածային գրոց որ ասաց, թէ արար լուսաւորս մեծամեծս ի նշանս,
«ի ժամանակս, յաւուրս և ի տարիս՝ յոյժ պիտոյ են մարդկան նշանք որ լինին ի լուսա-
«ւորացդ, եթէ ոք ըստ կէտ սահմանին ոչ ելանիցէ օտարոտի քննութեամբ. զի որ միտ ե-
«դեալ ընտրեսցէ զգեղեցիկ փորձ նոցա, և ոչ խառնիցէ ի ներքս ամպարշտութիւն ազգի
«ազգի հնարագիտութեան, գտանեն ի նշանաց անտի, զի վասն խոնաւոյ զժամանակն ցուցա-
«նէ, բազում անգամ վարդապետք լինին մեզ օդոյն պղտորութեան և դառնաշունչ սառնա-
«մանեաց.

Զի յերեկօրեայ (=յերեքօրեայ) ժա-
«մանակի յորժամ վճիտ երեւիցի, զյստակ
«պարզոյ յայտ առնէ. և Յորժամ ի մահիկ
«եղջիւրսն զնշան կարմրութեան կամ զմթու-
«թեան ունիցի՝ ջուրք բազումք յամպոց յեր-
«կիր հեղուն, և հարաւ յորդաշունչ բռնու-
«թեամբ յօդս բարբառի. և Յորժամ շուրջ բակ
«ունիցի յամպոց՝ ջուրք բազումք յօդոց յեր-
«կիր առաքին, կամ զարամուր բքոյ և զգառ-
«նացուցիչ հողմոց ամբոխելոյ յայտ առնեն.

ՅԱՂԱԳՍ ԱՄՊՈՑ ԵՒ ՆՇԱՆԱՑ.

Յորժամ յեղջերսն լուսնի կարմրութիւն և մթութիւն երեւի՝ ջուրք բազումք հեղուն յերկիր և հարաւ յորդաշունչ յաւդս բարբառի.

Յորժամ լուսինն բակ ունիցի յամպոց . . . ջուրք բազումք հեղուն յերկիր և կամ զամբոխումն աւդոց դառնաշունչ նշանակէ (տող 226—230).

« Զի յընծայմանն լուսնի բազում անգամ յորժամ յստակ և խաղաղ իցէ օդն, յան-
«կարծակի (խռովութիւնք) սաստիկ օդոց յայտնին ի նմա մրրկեալ, և ամպք ի վերայ ամ-
«պոց դիզանին յահ և յերկիւղ մեծի տագնապի. Եւ այսու ամենայնիւ յայտ է, եթէ նը-
«շանք որ լինին ի լուսաւորացդ՝ ի շահ օգտութեան են երկրի. Նաւավարն զգուշասցի եայլն
«(Հրատ. Պատ. եր. 51).

Խօսելո արեգական վրայ Շիրակացին ասում է.

«Զի Յորժամ ընդ ծագել արեգականն մթագոյն ելանիցէ և արեան և կայծական նշանակ ունիցին ճառագայթքն, ըստ փոփոխման խստաշունչ օդոյն եթէ ի նոյն կերպարանս կայցէ, և օդն պղտորեալ և յուզեալ՝ ոչ յստակիցի. և գոյնն մթնագոյն՝ ոչ լըրթասցի, և հողմք եւ խստագոյնք յուզեսցին, և ամպն եւ քան զեւս յաւելցէ, զերկար խոնաւայուզից և զսաստիկ անձրեւաց յայտ առնէ.

Եւ Յորժամ յամպոյ յամպ մտանիցէ արեգակն, զջերմակիծ շող ամպոյն յերկիր առաքելով զխոնաւութենէ օդոց յայտ առնէ.

ՅԱՂԱԳՍ ԱՄՊՈՑ ԵՒ ՆՇԱՆԱՑ.

Յորժամ ընդ ծագել արեգական մթագոյն ելանիցէ և նման արեան ունիցի զճառագայթսն՝ թե ի նմին յամիցէ և աւդն փիզեալ ոչ յիստակիցի, և ապա եւ քան զեւս բազմանայցեն և աւդքն խստաշունչ յաւելցին՝ զսաստիկ անձրեւոց յայտ առնէ (տող 213—216).

Յորժամ արեգակն ջերմ շողիւք . . և մանաւանդ ամպ յամպ մտանէ ջերմ ճառագայթիւք՝ զամպոց նշանակէ (տող 218—220).

«Եւ յորժամ ելանիցէ ծագումն զա-
«ռաջինսն խանձելով զառօրեայ անձրևածումն
«նշանակելով. *

«Եւ յորժամ ի մուտս գլխոյն խան-
«ձիցէ զերկինս կարմրացուցանելով, զառօրեայ
«պարզոյ յայտ առնէ.
«Մեկնութիւն Նշանաց եղև առաջին բա-
«նիւքդ (Հրատ. Պատ. եր. 56).

Ցորժամ կամի արեգակն ելանել և առ
Նովաւ ամպք հրագոյն շիկագոյն և խիտ . .
ոչ լինին ամպքն առանց անձրևի և ոչ աւ-
րըն առանց ցաւղոյ (տ. 95 97).

Ցորժամ ընդ մտանել արեգական ամպք
կարմրանան, զոր ոմանք խանձումն ամպոյ
ասեն, նշանակէ զպարզոյ (տ. 221—222).

Այս օրինակներից պարզ երևում է որ նոյն իմաստները, գրեթէ միևնոյն խօսքերով, երբեմն նոյն իսկ բառացի կրկնւում են. Դեռ կարելի էր ուրիշ օրինակներ էլ աւելացնել. Բայց մեզ համար աւելի նշանաւոր են վերջին խօսքերը՝ «Մեկնութիւն Նշանաց եղև առաջին բանիւքդ», այսինքն է թէ՝ նշանների մեկնութեան մի քանի օրինակներ բերելով Շիրակացին ընդհատում է իւր խօսքը, մատնացոյց անելով ընթերցողին մի ուրիշ գրուածքի վրայ, որ էր Նշանաց Մեկնութիւն, անշուշտ աւելի ընդարձակ, ամբողջական. Այդ Նշանաց Մեկնութիւնը նախընթաց էր Անանիայի «Ցաղագս Երկնի» գրուածքին, ուստի և բաղդատութեամբ կարող էր կոչուիլ «առաջին բանք». Ուրիշ խօսքով՝ Անանիան մի քանի օրինակ բերելով լուսնի, և մի քանի օրինակ արեգական նշանների, կարճ է կապում՝ առաջարկելով ընթերցողին դիմել իւր մի ուրիշ գրուածքին, Նշանաց Մեկնութեանը.

Մենք այս վերնագիրն էլ կտայինք ներքևի հրատարակութեանը, եթէ մեզ օգնութեան չհասնէր մի ուրիշ ձեռագիր. «Գէորգեան Ցուցակի» թ. 95 նօտրագիր ձեռագիրը՝ Թղթոց գիրք և ժողովածու, գրուած հայոց ՊՀԵ—ՋԻԵ (1426—1476 փրկ.) թուին, ձեռամբ Մատթէոս գրչի, ունի մի հատուած, որ համառօտութիւն է ներքևի հրատարակութեան. Այդ համառօտութեան վերնագիրն է «Ցաղագս ամպոց և նշանաց», որն և բոլոր հաւանականութեամբ ընդարձակի վերնագիրն էր. Ցամենայն դէպս այս վերտառութիւնը բոլորովին համապատասխանում է Շիրակացու երկասիրութեան բովանդակութեանը. Դնում ենք այդ համառօտութիւնը և խուսափելով երկարութիւնից, բաւականանում ենք նշանակելով իւրաքանչիւր ասութեան դիմաց ընդարձակի տողահամարները.

Ձեռ. թ. 95, եր. 341ե.

### «ՑԱՂԱԳՍ ԱՄՊՈՑ ԵՒ ՆՇԱՆԱՑ»

Ցորժամ ծագէ արեգակն ** և կայծակ լուսոյ, և առ նովաւ շիկագոյն ամպ լինի կամ մթագոյն՝ շիկագոյնն հողմոյ նշանակ է, իսկ մթնագոյնն՝ անձրևոյ (=Ընդարձակի տող 65—66).

Ցորժամ ընդ ելանել արեգականն ամպ լինի ահաւոր, և ապա արեգակն ամպովն ահաւոր երևի, և վերանայ ճառագայթիւքն և լոկ բոլոր ելանէ՝ անձրև նշանակէ (Ընդ. տ. 73—75).

Ցորժամ արեգակն մեծ երևի ամպով՝ պարզ նշանակէ (տ. 76).

Ցորժամ ձմերանի արեգակն դեղնագոյն երևի՝ պարզ նշանակէ (տ. 79).

Ցորժամ ընդ արևմուտս արեգակն ամպով առագաստեալ երևի՝ անձրև նշանակէ (տ. 84).

Ցորժամ արեգակն ճառագայթիցն (այսպէս) և առնովաւ շիկագոյն ամպ՝ ոչ է ակընկալութիւն անձրևի (տ. 88).

Ցորժամ կամի արեգակն ծագել և առ նովաւ շիկագոյն և հրագոյն ամպ լինի՝ աւրն ոչ լինի առանց անձրևի և ոչ ամպ առանց ցօղոյ (տ. 95).

---

* Այլ ընթերցուած, ուրիշ ձեռագրից. Դարձեալ յորժամ լինիցի ծագումն գլխառաջեան խանձելով զառօրեայ անձրեւածումն նշանակէ :

** Թէ այստեղ եւ թէ յետոյ արեգակ բառը գրւած է միշտ միեւնոյն գաղափարագրով, ինչպէս որ Ընդարձակում:

Ցորժամ ընդ մտանել արեգականն ցաւղ հարկանի՝ անձրև նշանակէ (տ. 114)։
Ցորժամ կամար երևի ի վերոյ՝ անձրև նշանակէ (տ. 139)։
Ցորժամ մրջիւնն զձուն ի դուրս պեղէ՝ անձրև գայ (տ. 166)։
Ցորժամ մառախուղ ի վերայ լերանց անկանի՝ ամպոց և հողմոց նշանակ է (տ. 151)։
Ցորժամ շամանդաղ ձգի ի վերայ լերանց՝ պարզ նշանակէ (տ 187)։
Ցորժամ աստեղք պաղպաղ երևին և շարժին՝ ընդ երկար անձրև նշանակէ (տ. )
Ցորժամ ծիծառունք զթևս իւրեանց ճախրեն՝ անձրև նշանակէ հողմով (տ. 157)։
Թէ զթևս իւրեանց ի ջուրս հասուցանեն՝ յուզմունք հողմոց և ամպոց լինին (տ. 157—158)։
Ցորժամ աքաւք կանչեն և զթևս ճախրեն՝ կարկուտ նշանակէ (տ. 170—172)։
Ցորժամ լուսինն .Գ. կամ .Դ. աւուրն սուրբ և վճիտ երևի՝ պարզ նշանակէ (տ. 4)։
Ապա թէ մահիկ եղջիւրն մթալար թխութիւն ունիցի՝ անձրև նշանակէ (տ. 4—11)։

Այս բոլորից պարզ է ուրեմն, թէ մենք որտեղից ենք առնում հրատարակութեանս ենթագրական վերնագիրը և ինչ հիմունքներով այս գրուածքը վերագրում ենք Շիրակացուն կամ ինչպէս մեր հնագոյն օրինակն անուանում է՝ Շիրակային Անանիա Համարողին. «Ային» վերջաւորութեամբ ազգանուններ թէև հազուագիւտ մեր հին մատենագրութեան մէջ, բայց կան, ինչպէս օրինակ Ընծային = Ընծայեցի. Հարքային = Հարքացի ևն. (տես Ղազար Փարպ.).

Մնում է մեզ մի երկու խօսք ասել Անանիայի այս երկասիրութեան արժանաւորութեանց և նշանակութեան մասին. Ամենից առաջ հետաքրքրական է գրուածքի լեզուն, իւր բազմաթիւ նոր բառերով, ասացուածներով և օտար բառերովը. Բովանդակութեան կողմից այս փոքրիկ գրութիւնը գլխովին տարբերւում է մեր տոմարագիտական—աստղաբաշխական—աստղագիտական մատենագրութեան մէջ եղած բազմաթիւ նման գրուածքներից. Սա մի զուտ գիտնական գրուածք է, բոլորովին ազատ աստղագիտական—ախտարական տարրից. Միմիայն բնական—բնագիտական բացատրութիւններ և մեկնութիւններ են տրուած նշաններին. Եւ այս մի շատ բացառիկ երևոյթ է, գրեթէ իւր տեսակի մէջ միակը, մեր հին մատենագրութեան մէջ, մինչդեռ նման բովանդակութեամբ բանաքաղութիւնները հետագայ և յետին դարերում խճողւում են ոգէտ և նախապաշարեալ գանգաչումներով. Մի քանի օրինակ այս վերջիններից. «Իմաստասիրաց ասացեալ յաղագս լուսնի և արեգական. ի նաւասարդի թէ լուսինն խաւարի՝ շատ ձիւն գայ. ի հոռի եթէ լուսինն խաւարի՝ ելանէ թագաւոր մի յարևելից և առնէ արիւնհեղութիւն ...» (Ձեռ. 2026, 9). Ահա լուսինն ու արեգակը թագաւորը իրար հետ շաղկապուած. Ուրիշ օրինակ աստղաբաշխական—աստղագիտական «ցուցմունքներից». «Ցորժամ յարևմուտից կողմն ամպ մնա մինչև ի վաղիւն՝ նշանակ է անձրևի. Թէ ի մուտս արևուն ամպ խանձել տեսանես՝ անձրև նշանակէ. Ցորժամ լուսինն նոր լինի կամ փուլ և կարմիր դառնա կամ մլարի՝ բերոյ նշան է ... Ցորժամ աստղ ցոլանա յարևելից յարևմուտս՝ թագաւորն պարսից և խուաց (?) պատերազմին, որպէս ասէ Անդրէաս իմաստասէրն. .. Եթէ ի չորրորդ աւրն զբազմաստեղն գնակ տեսանես՝ զօրացն պարսից մեծ շարժումն լինի, ապա թէ ճապաղ՝ պարսից նուազութիւն և Հայոց բարձրութիւն» (Ձ. Թ. 2024, 7). Եւ այսպէս անվերջ.* Անանիայի այն գրուածքը, ինչպէս ասացինք, ազատ է բոլորովին աստղագիտական տարրերից.

Մնում է մի ուրիշ խնդիր. բնագիր է թէ թարգմանական այս «Յաղագս ամպոց և նշանացը». Մենք հակուած ենք կարծել վերջինը, ոչ միայն օտար (յոյն) բառերի գործածութեան պատճառով—այդ կարող էր տեղի ունենալ և ինքնուրոյն հայ բնագրում—այլ աչքի առաջ ունենալով գիտողութեանց մի քանիսի անհնարաւորութիւնը Հայաստանում կամ նոյն իսկ Տրապիզոնում, ուր երկար տարիներ ապրել է Շիրակացին (օրինակ կղզիների մասին եղած գիտողութիւնը տ. 195).

* Այդպիսի «ցուցմունքներ» կան եւ հրատարակուած Էֆիմերտէսների, Երազահանների մէջ. տես օրինակ՝ Երազահան, տպ. Երեւան, 1877. եր. 267, 283: Տես նաեւ Էֆիմէրտէ, Վենետիկ, 1796: Այս հրատարակութեան մէջ կան հետքեր եւ մեր Ընդարձակից, օր. տես «նշանք անձրեւաց, հողմոց, մրրկաց եւ պարզութեան» գլուխը, եր. 172:

Թէև մեր երկաթագիր Չ–ը հնութեամբ երևելի, բայց անշուշտ ազատ չէ թերութիւններից և աղճատանքներից։ Մի քանի կէտեր մնում են ինձ համար խնդրական, օրինակ տ. 146—8՝ կ–ժէ–ւ և «և փիւկոս» թուչունների անունը, որ պէտք է լինին միևնոյն բանը, ինչպէս որ պահանջում է ասութեան ընդհանուր իմաստը. թերևս պէտք է լինին առաջինը՝ կ–ժէ–ւ, երկրորդը՝ կ–ժէ–կ–ս ? (= և փիւկոս)։ Փիւկոս յունարէն, եթէ չեմ սխալւում, նշանակում է իշամեղու։ Այս և ուրիշ մթին կէտերի բացատրութիւնը մնում է աւելի հմուտներին։ Յուսալի է նոյնպէս, որ նոր ձեռագրեր երևան գալով լրացնեն թերին և ուղղեն վրիպակները։ Մեր մատենադարանի մօտ 100 Չ–երի մէջ, որոնցում Անանիա Շիրակացուց հատուածներ կան, ինձ չյաջողուեց գտնել այս գրուածքի մի ուրիշ օրինակ։

Գալուստ Տ. Մկրտչեան։

[ԱՆԱՆԻԱՅԻ ՇԻՐԱԿԱՑՒՈՅ ՀԱՄԱՐՈՂԻ]

[ՅԱՂԱԳՍ ԱՄՊՈՑ ԵՒ ՆՇԱՆԱՑ]

[ծԸ] . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

[9a] ՅՈՐԺԱՄ •Գ• աւրեայ երեւի լուսինն եւ եղջերքն վերամբարձեալ՝ եւ յստակ եւ սուրբ լինի՝ նշանակէ զաւդ պարզութեան. ապա թէ սուրբ են եղջերքն եւ շիկագոյն՝ հողմային նշանակեն. վասն խառնուածոյ սեաւ թանձր ամպոյն ի հայելիս պայծառութեան լուսոյն՝ շիկագոյն երեւի։

Յորժամ •Գ• աւրեայ լինի լուսինն՝ արժան ե պայծառագոյն լինել, ապա թէ որպէս զ •Գ• աւրէն տխուր են եղջերքն եւ թանձր եւ ոչ սուր ձգեալ, այլ լիացեալ ծայրքն եւ բթացեալ՝ նշանակեն հողմ արեւմտեայ կամ անձրեւ. վասն զի թխացեալ աւդն այնպէս ցուցանէ զեղջերսն լուսնի։

Յորժամ •Գ• աւրեայ է լուսինն եւ եղջերք ոչ ի ներքս խոնարհեալ եւ ոչ յողնեալ արտաքս, այլ կանգուն վերամբարձեալ՝ հողմոց նշանակէ, վա[ս]ն որոյ իսկզբանէ կանգնին եղջերքն վերամբարձեալ յաւդոցն. որպէս երեւի թէ յաւդոցն ձգի ի վեր, ոչ թեթեւ հողմոյ նշան, այլ սաստկագոյն հողմոյ նշան, որ է հիւսիսային եւ լիբեացի. ապա թէ ի չորրորդումն նորին նման երեւին եղջերքն՝ առաւել նշանակէ զաւդոց սաստկութիւն, զի վասն ուժգնութեան աւդոցն եւ ի •Գ• աւուրն կանգուն երեւին եղջերքն։

Յորժամ եղջերքն հարաւայինն խոնարհեալ՝ զհարաւ նշանակէ. եթէ արեւմտեայ եղջերն խոնարհեալ՝ զարեւմուտ հողմ նշանակէ, ապա թէ յարեւմուտս կողմն ճապկեալ են եղջերքն՝ նշանակեն զհարաւոյ հողմ. վասն զի մղէ կանգուն եղջերն զլուսաւորութիւն ի հարաւոյ յարեւմուտս եւ յարեւմտից ի հարաւ, եւ այսպէս երեւի եղջերն խոնարհեալ յողն։

Յորժամ •Գ• աւրեայ է լուսինն եւ ամենայն բոլորն շիկա[9b]գոյն է՝ զյուզմունս ամպոց նշանակէ եւ զաւդոց. ապա թէ շիկագոյնս աճեցեալ եւ հրացեալ՝ եւս առաւել քան զառաջին[ն] լինի յուզումն ամպոց եւ աւդոց։

Յորժամ երկո–ցուն կողմանցն հասարակեալ լուսինն միապէս, եթէ յաճունս իցէ եթէ ի մաշս, եւ եղջերքն հարթեալ եւ մէջ հասարակին լցեալ, վասն զի սկսնու յեղջերացն եւ մաշի յեղջերացն, եւ սուրբ է գոյնն՝ զպարզ նշանակէ, ապա թէ շիկագոյն՝ հողմին նշանակէ զաւուրս ամսոյն այսու նշանաւ. ապա թէ ի միոյ կողմանէ թխագոյն՝ յանկագոյն մասն ունի ամիսն։

Յորժամ նշան երեւի ի լուսինն յ •Գ• աւրեին կամ ի •Դ• աւրեին մահկաձեւ՝ եթէ ի պարզոյ եթէ յամպոյ յուզման՝ մինչեւ ցհասարակն լուսնոյն զնոյն նշանակեն աւդոյն հիւթք. ապա թէ ի հասարակէ լուսնոյն երեւի նոյն նշան՝ մինչեւ ցգլուխ լուսնոյն նշան լինի. ապա թէ դարձեալ նշան լուսնոյն ամսոյ ի գլուխն երեւի՝ մինչեւ ցհասարակն լուսնոյն մաշացն նոյն լինի. դար-

---

ծան. Տող 4. 8 եւլն լուսին, արեգակ բառերը մեծ մասամբ գաղափարագրով են գրուած։ Տ. 8 «արժան ե»=արժան է, այլ եւ «թե, եթե»։ Հնագոյն ուղղագրութիւնը պահում ենք անփոփոխ։ Նոյնպէս «եղջեւր» եւ նման հին ձեւերը, տ. 20, 21, եւլն։ 27, հին ուղղագրութիւն է եւ «երկուցուն» •ը• եւ ու թէ վրիպակ։

ձեալ ի հասարակէն նոյն լինի նշան մինչեւ երիս աւուրս մահկաձեւ նոյն լինի։

Յորժամ ի լուսինն մէր լինի եւ յամենայն կողմանց զլուսինն թաղանթեալ իցէ՝ եթէ առ սակաւ սակաւ անաւսրանայ մէրն եւ հալի թխագոյն երեւմամբ՝ զպարզ նշանակէ, եւ այսպէս ծանուցանէ զաւդոցն ժողովլ անաւսր եւ դիւրահալ։ Ապա թէ լուսինն ի միջէ կողմանէ մէրն պատառի եւ ձգի՝ հողմային հիւթից նշանակ է, եւ անտի լինի ձգումն հողմոյն՝ ուստի ձգումն մէրին եղեւ. ապա թէ դարձեալ ի լուսինն մէր երեւի՝ նշանակէ յուզմունս աւդոց. վասն զի կրկնումն[10a] այս մէրի ի թանձրութենէ հիւթոց աւդոյն եղեւ, ապա թէ երրորդ եւս երեւե[ս]ցի մէրն եւ թուխ՝ եւս դժնդակագոյն ցուցանէ զյուզմունս աւդոց, եւ այս երրորդ նշան է դժնդակ եւ առաւել պատճառ յուզման ձմերանւոյ։

ԺԹ Յորժամ առ արեգակամբ երեւե[ս]ցի նշան ջրլրեալ՝ յուզումն աւդոց լինի եթէ հողմոյ է թէ անձրեւաց. քան զլուսինն այս զաւրաւորագոյնէ, զի եւ ճառագայթք արեգական ուժաւորագոյն են քան զլուսնի. քանզի ոչ կարեն ճառագայթք լուսնի հալել զաւդոցն ժողովեալ թանձրութիւն ամպոց։ Եւ այս [հիւթք] աւդոց արեգական յայտնապէս ցուցանեն զնշանս քան զլուսնի, որք ճշմարտապէս հայլին ընդ արեգակն, յորմէ նշանաց մարթի ճանաչել որպէս լինի։

Յորժամ յարեւելից կողմանէ արեգակն երանգ երանգ երեւի որպէս թէ հրագոյն եւ շիկագոյն եւ թուխ եւ կամ այլ ինչ գոյն հաստութեամբ զխռովութիւն աւդոց նշանակէ եւ չէ ակնկալութիւն պարզոյ։

Յորժամ արեգակն կիսատ երեւի եւ նորին նման կիսատ եւ անամպ դաւտին որ զարեգակամբն երեւի՝ նշանակէ զառաջիկայ աւրն պարզ լինել։

Յորժամ [ամ]ենայն կողմանց հարթ երեւին մուտք արեգական՝ հողմ նշանակէ, ապա թէ արեգակն խուղեալ երեւի եւ ճառագայթք պատառեալ է որ յարեւմուտս եւ է որ ի հարաւ կոյս, եւ մէջն պայծառ եւսուրբ երեւի՝ անձրեւս եւ հողմս նշանակէ։

Յորժամ ընդ ելանել արեգական կայծակ լինի եւ առ նովաւ շիկագոյն երեւի կամ թխագոյն՝ նշանակէ շիկագոյնն հողմ եւ թխագոյնն անձրեւս, ապա թէ է ինչ արեգակն որ շիկագոյն երեւի եւ է ինչ որ թխագոյն՝ նշանակէ անձրեւս թխագոյնն եւ հողմս շիկագոյնն։

[10b]Յորժամ արեգակն մտանէ կամ ծագէ եւ ճառագայթքն յերկարս խոնարհեալ մղեալ յաւդոցն եւ զմի կողմն ընդ ծագելն կամ ընդ մտանելն հովանի ունի յամպոյ, եւ է զի ամենայն իսկ ըմբռնեալ յամպոյ լինի ընդ ծագելն եւ ընդ մտանելն՝ զայն աւուրս ....

Յորժամ յառաջագոյն քան զարեգական ծագել ամպ չափաւոր եւ անաւսր՝ եւ ապա արեգակն ընդ ամպովն վերանա[յ] տխուր ճառագայթիւք, այնպէս զի լոկ բոլորն երեւե[ս]ցի՝ անձրեւ նշանակէ։

Յորժամ ընդ ծագել արեգակն մեծագոյն քան զսովորականն երեւե[ս]ցի եւ ընդ ելանելն սփռի եւ լայնանա[յ], որպէս զի հալի ինչ, եւ առ սակաւ սակաւ ի վեր ելեալ փոքրագոյն երեւի՝ նշանակէ պարզ լինել։

Յորժամ ձմեռնային ժամանակի ի մուտսն դեղնագոյն երեւի՝ պարզ նշանակէ, եւ այս ի խտացեալ ամպոց եւ լուծեալ եւ յանաւսր աւդ փոփոխեալ. եւ ի ճառագայթից ջեռեալ խոնաւ երեւեցուցանէ. որպէս զգաւտի ձգի եւ ճառագայթքն ընդ խոնաւն խառնին, եւ դեղնագոյն եւ կանաչ երեւի ընդ մտանել արեւու։

Յորժամ ամպ առագաստէ՝ թէ թուխ են ամպքն եւ ընդ առագաստելն ճառագայթքն յամպն խառնին յերկոցունց կողմանց՝ նշանակէ զառաջիկայ աւրն անձրեւս լինել, զի վասն թանձրութեան ամպոցն թուխ երեւի։

---

46. «երեւեցի» ձեւը աւելի արժանի է ուշադրութեան. մեր կարծիքով այս մի անցողական ձեւ է «երեւեացի» ձեւագրին եւ «երեւիցի» համեմատաբար նորագոյն ձեւերի միջեւ: Երկաթագիր գրութեանց մէջ շատ յաճախ է պատահում այս միջին ձեւը: 53. Ձեռագրում «թիւք աւդոց», ուղղում ենք «հիւթք», հետեւելով բնագրի 34, 46 տողերին: 78 Ձ. «երեւեալ». 81 Ձ. «որպէս զի գաւտի».

Յորժամ արեգական պատա[ր]ումն լինի եւ առանց ամպոյ մտանէ՝ եթե լինիցի[ն] առ նովաւ շիկագոյն ամպք՝ ոչ զցայգն եւ ոչ զյառաջիկայ աւրն չէ ակնկալութիւն անձրեւի։

Յորժամ արեգական ճառագայթքն ոխրեալ մեզ երեւի[ն] եւ թխութեան նմանեալ, որպէս[11a] երբեմն մեզ խաւարչտագոյն երեւի[ն]. եւ այս լինի արեգական խաւարչտանալոյ։

Յորժամ թանձր ամպ լինի առ նովաւ՝ յուղման ամպոց նշանակ է։

Յորժամ կամի արեգակն ելանել եւ առ նովաւ ամպք հրագոյն շիկագոյն եւ խիտ՝ նշանակէ զամպս, եւ ոչ լինին ամպքն առանց անձրեւի եւ ոչ աւրն առանց ցաւղոյ։

Յորժամ արեգակն ելանէ եւ ճառագայթքն գոգցես թե յարեւելս կոյս ելանեն զբոլորակաւն եւ խաւարչտագոյն լինի՝ ցուցանէ թէ յանաւսր ամպոց առագաստեալ լինի, եւ այս նշանակէ անձրեւ կամ հողմ. ապա թե ճառագայթքն առաւել մրրկեալ երեւին՝ եւ առանց ամպոյ նշանակէ։

Յորժամ առ արեգակամբ թուխ կամ մթար լինի՝ զխռովութիւն ձմերանւոյ նշանակէ, ապա թէ մաւտագոյն լինի մթարն՝ տեղատարափք լինին. վասն զի նշանակեն այս ամպք զթանձրութիւն աւդոց եւ զժուարաշաւղութիւն։ Որպէս ասացի՝ թե մաւտագոյն լիցի բակն բոլորեալ արեգականն եւ դժուարաշաւղ—յայտ է թե երիցս անգամ այսպէս ամպք շրջապատեն զարեգակամբն՝—մեծ ձմերանւոյ նշանակք են։

Յորժամ երեւի որ կոչի պատիղոլն ամպ թանձր՝ ըմբռնեալ ժողովեալ յարեգական ճառագայթից, որպէս թե նորա նման երեւի եւ ընդ նմա գնայ՝ ակնկալութիւն է ձմերանւոյ. յայտ է՝ զի եւ այսպիսի ինչ վասն առաւելութեան թանձրութեան ամպոց անհալ լինի, թե մաւտ առ արեգակամբն գնայ. եւ յորժամ ի հարաւոյ կողմանէ լինի այս պատիղոլն՝ հարաւ ցուցանէ, եթե արեւմտից՝ արեւմտէ ցուցանէ։

Յորժամ մտանէ արեգակն երեկուն եւ ցաւղ արկանէ՝ առաւել անձրեւս նշանակէ զայն աւուրս քան զծագել արեգականն. եւ վասն այնր լինի այնպէս, զի ի ծագել արեգականն ի ջերմու[11b]թենէ ի ցրտութիւն փոխի. իսկ երեկուն վասն առաջիկայ գիշերոյն ցրտութեան ամպքն հաստատուն կան, վասն այնր զյուղմունս ամպոց նշանակէ։

Կ ԱՍՏԵՂՔ են որոց խառնակեալ ճանապարհք լինին գնացից, որ անուանեալ կոչի[ն] յարդգող, եւ այս ճանապարհ թե սպիտականայ՝ հողմ ցուցանէ յայնմ կողմանէ ուստի շարժեցաւն. ապա թե ի միւսմէ կողմանէ աստեղքն ոչ շարժեցան, այդ յայդմէ կողմանէ՝ խառնակ հողմ նշանակէ։

Տեղի է որ կոչի մսուր եւ այս ժողով խմն է, որ երեւի զամպ նման, եւ լինի առ պատենիւք խեցգետոյն եւ «բ» աստեղք առ նովաւ՝ մի ի հարաւոյ եւ մի յարեւմտից, որ կոչեն էշս, եւ յորժամ պարզոյ ի վեր հայիս՝ յանկարծ մսուրն չերեւի և նուաղ աստեղքն՝ որ էշքն կոչին՝ երեւին—զյուղմունս ամպոց նշանակէ։

Յորժամ մսուրն թուխ երեւի եւ աստեղքն իրերաց նման՝ անձրեւս նշանակէ։

Յորժամ առ մսրովն «բ» աստեղքն որ կոչին էշք, եւ որ ի հարաւոյն է նուաղագոյն երեւի, եւ որ արեւմտէն նորին նման սուրբ՝ հողմս նշանակէ արեւմտէ. ապա թե շրջի՝ արեւմտէն նուաղագոյն լինի եւ հարաւային նորին նման լինի սուրբ՝ հարաւ լինի։

ԿԱ Յորժամ կայծակէ ի չորից կողմանց եւ ի նմին կողմանց ուստի կայծակէ՛ն հողմք լինին՝ զյուղմունս ամպոց նշանակէ. մանաւանդ որ ի ծովու նաւք են վտանգին։

Յորժամ սկիզբն գիշերոյ լինի եւ ամպ երեւի նման գզաթոյ՝ զխռովութիւն աւդոց նշա[նակէ]։

Յորժամ կամարն ընդ արեւմաւտս կրկին երեւի՝ անձրեւս նշա[նակէ]։

---

87 Ձ. «պատառումն»։

Յորժամ որ եւ իցէ աստեղս տեսանես մէգ թուխ՝ գյուզմունս ամպոց նշանակէ։

Յորժամ ի գլուխս լերանց[12a]գնդչիւնք լինին՝ հողմս նշանակեն։

ԿԲ Յորժամ՝ արագիլ ի ծովէ կողմանէ փախչի զարհուրելով եւ սուր ձայն առնելով գյուզմունս ամպոց նշանա[կէ]․ եւ վասն այնր փախչի, զի յառաջագոյն ճանաչէ ի խռովութենէ ծովուն։

Յորժամ պարզոյ կափիւք ի մայրեաց թռչին ընդդէմ երերաց զարհուրելով նշանակեն գյուզմունս ամպոց եւ հողմոց․ եւ փիւկոս այս հաւիկ մի խլէկ, որ ի փոքր ի շնչմանէ շարժի։

Յորժամ մոմունք եւ սագք ի ցամաք ելանեն եւ զթեւսն կտուեն՝ գյուզմունս հողմոց նշանակեն։

ԿԳ Յորժամ ի գլուխս լերանց ամպ ընդ երկար երկայնի եւ նուազ եւ երկայն երեւի՝ հողմ նշա[նակէ]։

Յորժամ պապիւք ի ծովէ ելանեն բազում զմիմեամբք՝ հողմ նշանակէ․ նման է որպէս որ յորդշաուեդ (՞) ելանէ։

Յորժամ ծովային կամ գետային հաւք անդադար մտխրղձին, որպէս թէ հարթ ջրոյն լինիցին՝ անձրեւս նշա[նակէ]։

Յորժամ ծիծառունք առ լճովք թռչին ստէպ ստէպ եւ զթեւսն ի ջուրն հարկանեն՝ գյուզմունս ամպոց նշա[նակէ]։

ԿԴ Յորժամ գորտք առ միմեանս ժողովին եւ կոչեն՝ գյուզմունս ամպոց նշանակեն․ եւ են գորտք որ կոչին գիւղնիովնք ճշմարտեն առաւել զժամանակս եւ այնպէս մանրիկք են՝ մինչ տրզկունք կոծեն զնոսա։

Յորժամ աղաղանչք ձայն առնեն ընդ առաւաւօտ՝ ձմեռն նշանակէ։

Յորժամ առ ծովեզերբ թեւովք զջուրսն հարկանեն՝ գյուզմունս ամպոց նշանակէ։

Յորժամ արջառ յերկին գլխամբարձ է եւ հոտայ՝ անձրեւս նշանակէ։

[ԿԵ] Յորժամ մրջմունք զձուս իւրեանց հանեն ի ծակուց՝ անձրեւս նշանակէ։

Յորժամ մրջմունք ժողովեալք եւ յորմ նստիցին՝ անձրեւս նշանակէ։

Յորժամ ընտանի հաւք կտուին[12b]եւ մեծաձայն կոչեն՝ անձրեւս նշանակեն։

Յորժամ ճայք զմիմեամբք շրջապատին եւ ճչեն՝ անձրեւս նշանակեն․ մանաւանդ ագռաւք յորժամ թռչին եւ միմեանց ձայնս առնեն՝ անձրեւս եւ շանթս եւ կարկուտս նշ[անակեն]։

Յորժամ ճայք թանձր ձայնիւ ճչեն եւ թեւովք զաւգս հարկանեն՝ անձրեւս նշանակեն։

ԿԶ Յորժամ ընտանի հաւք եւ սողակտուցք եւ ձկնքաղք կտեն եւ ի բոյնս գալով շարժեն զթեւս իւրեանց՝ յուզմունք ամպոց լինի։

Յորժամ արագիլք ի ծովակս իջանեն ձայն[իւ]անձրեւս նշա[նակէ]։

ԿԷ Յորժամ ճանճք սրագոյնս խածանեն եւ զնոյն արիւն յորդորելով ծծեն՝ գյուզմունս ամպոց նշանակէ։

Յորժամ խոնաւոյ գիշերի ի պատրուկէ ճրագաց կայծ ոստանի՝ անձրեւ նշանակէ․ եւ զի առ պատրուկաւն հրեղէն բոլորաձեւ ա՛ռ՝ անձրեւս ձմերանի նշանակէ։ Եթե ի պատրուկէն լոյսն չելանէ կանգուն, այլ՝ է զի ի մի կողմանէ կամ յերկոսեան կողմանս յայսկոյս յայնկոյս պղպջաց պէս կողմանի՝ անձրեւս նշանակէ։

Յորժամ մոմունք ամարանի ստէպ ստէպ թռչին ճախրելով անձրեւս նշանակեն։

Յորժամ շամանդաղ ձգի ի լեռնոտանէ եւ ծայրք լերանցն երեւի[ն] յիստակ՝ պարզոյ նշան է։

ԿԸ Յորժամ ի կաւկարայս կամ ի պուտուճս կայծակունք ժողովին՝ անձրեւս նշանակեն։

Յորժամ կայծ ունի[ն] յինքեանս պուտունք որպէս կորեակ շուրջ զին-

148 «մոմունք»=մրտիմս, Երզնկացի Յ խորանս, Լեհ. բառ. Հայկ. բառ.

քեամ[բ]ք՝ անձրեւս նշանակէ։

Յորժամ անդունդք շրջանս առնուն եւ խորն պայծառ երեւի՝ հարաւ հողմ լինի։

Յորժամ երկրի կամ կղզոյ ծայրք դիմաւք ի ծովս կոյմն են եւ քան զինքեան[ս]վերագոյն ամպ ունին՝ խառնակ հողմ նշանակեն։

Յորժամ հարաւահողմ լինի, ուժգին եւ սաստիկ արկանեն զցաւղ, հիւսիսային հողմոյ նշանակ է լինել։

[13a]Յորժամ յանդունդս երեւի որպէս փոշի եւ աւդ փոշեցեալ խարտեշութեամբ, այնպէս անաւսրացեալ՝ որպէս թե չերեւի իսկ, նշանակէ հարաւ լինել։

կթ. Յորժամ շամանդաղ լինի զամառն՝ զարեւմտէ հողմ նշանակէ։

Յորժամ ընդ երեկոյս կարմրութիւն լինի յերկին՝ զպարզ նշանակէ. եւ յորժամ ընդ առաւաւտս՝ անձրեւս նշանակէ։

Յորժամ արեգակն յելսն իւր մթագոյն երեւեցուցանէ զճառագայթսն իւր՝ մեծ ամպոց յուզմունս նշանակէ։

Յորժամ ամպ յամպ ընթանա[յ]յարեգակն եւ ամպն թանձրանա[յ]՝ զմեծ ամպոյ նշանակէ։

Յորժամ ի մտանել արեգակն ճառագայթս ձգտեցուցանէ վեր վեր՝ զամպոց յուզմունս նշանակէ։

Յորժամ յարեգակն գաւտիք երեւին՝ նշանակէ զամպոց զեթերին եւ զաւդոց շնչ[մունս]։

Յորժամ ընդ ծագել արեգակն մթագոյն ելանիցէ եւ նման արեան ունիցի զճառագայթսն՝ թե ի նմին յամիցէ եւ աւդն վիճեալ ոչ յիստակիցի՝ եւ ապա եւս քան զեւս բազմանայցեն եւ աւդքն խստաշունչ յաւելցին՝ զսաստիկ անձրեւոց յայտ առնէ։

Յորժամ արեգակամբ այգ արեգակունք երեւին՝ զհողմոյ նշանակէ։

Յորժամ արեգակն ջերմ շողիւք՝ եւ ի վերայ գլխոյն որպէս հուր լուցանէ, եւ մանաւանդ ամպ յամպ մտանէ ջերմ ճառագայթիւք՝ զամպոց նշանակէ։

Յորժամ ընդ մտանե[լ]արեգական ամպքն կարմրանան, զոր ոմանք խանձումն ամպոյ ասեն՝ նշանակէ զպարզոյ։

Յորժամ արեգակն ցաւղ շատ արկանէ՝ նշանակէ զերաշտութեան։

Յորժամ աղեղն յամպս երեւի՝ զսաստիկ ամպոց նշանա[կէ]եւ փարատէ զխստութիւնն։

Հ Յորժամ լուսինն բակ ունիցի յամպոց, եւ մայր զարեգակն ունիցի՝ յամպոց ջուրք բազումք հեղուն յերկիր, եւ կամ զամբոխումն աւդոց դառնաշունչ նշանակէ։

Յորժամ յեղջերսն լուսնի կարմրութիւն եւ մթութիւն երեւի՝ ջուրք բազումք հեղուն յերկիր եւ հարաւ բռնութեամբ յաւդս բարբառի։

[13b]Յորժամ ամենայն աստեղք խառնակ երեւին՝ զանձրեւս նշանակեն եւ զեթերին շնչումն եւ կարկուտս ի տեղիս տեղիս։



---

198 Զ. «Կարտեշութեամբ»։

# ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ

## Բ

Շիրակացու վերին աստիճանի հետաքրքրական երկասիրութիւններից մէկն է անշուշտ Նրա Թուաբանական Խնդիրների Ժողովածուն, որ կրում է Ցաղագս Հարցման և Լուծման վերնագիրը։ Նշանաւոր ոչ միայն իբրև առաջին Թուաբանական աշխատանքը մեր հին մատենագրութեան մէջ, այլ մանաւանդ իբրև պատմական, տեղագրական, սովորութեանց ու բարքերի վերաբերեալ տեղեկութիւններով լի և հօծ մի գրութիւն, որ տալիս է մեզ միանգամայն և նոր բառերի ու տերմինների բաւական մեծ քանակութիւն և ընդլայնում է մեր տեսութեան սահմանները՝ այդ անցած դարերի վերաբերութեամբ։

Բոլոր ջանքս է եղել բնագիրը ուղիղ վերծանել և ճշտել։ Երկու տարի առաջ ինձ յաջողեց գտնել Շիրակացու այս երկասիրութեան մի օրինակը Գէորգ Կաթուղիկոսի Ցուցակում—այս հրատարակութեան Բ օրինակը—որ սակայն սխալաշատ էր և կարօտ մեծ սրբագրութիւնների։ Այբբենական Թուանշանների սովորական շփոթութիւններից (գ—դ, ղ—զ, Մ—Տ—Ո, ևլն) առաջացած վրիպակների ուղղելը՝ հաւանական ենթադրութեանց վրայ հիմնուած՝ չէր բաւել անշուշտ, եթէ չունենայինք Լուծմանց մէջ և պատասխանի Թուերը, որոնք և իբրև հաստատուն կռուան ծառայեցին ինձ վերականգնելու համար տառերի շփոթութիւնից առաջացած վրիպակների մեծագոյն մասը ամենայն յաջողութեամբ։

Հայր Մեսրովբը, որ ներկայ էր լինում շատ անգամ իմ մանրակրկիտ ջանքերին, ուղղուած այս Թուաբանական խնդիրների բնագիրը վերականգնելուն, ցոյց տուեց ինձ մի նոր, լաւագոյն օրինակ այս գրուածքի, որին ինքն հանդիպել էր ժողովածուները ցուցակագրելիս, որով և գործը մեծապէս դիւրացաւ։ Այս նոր օրինակը—հրատարակութեանս Ա օրինակը—ոչ միայն գլխովին արդարացրեց իմ բոլոր սրբագրութիւնները, այլ և պարզեց մնացած մութ կէտերը, այնպէս որ այժմ այս Ա և Բ ձեռագրերի համեմատութեամբ ունինք՝ գրեթէ անսխալ և լրիւ՝ գրուածքի ամբողջութիւնը։

Հայկ. Բառգրքի կազմողները չեն ունեցել Շիրակացու այս գրուածքը, որից սակայն մի քանի բառ Ստ. Լեհացու բառարանից, միջնորդաբար, մտել են այդ մեծ հրատարակութեան մէջ, տե՛ս, օրինակ, Լոք բառը, ուր առաջ է բերուած իբրև վկայութիւն այս գրուածքի Ժ-դ հարցման առաջին տողը՝ «լոք մի կալան ի գետն Երասխ», ոչ անմիջապէս Անանիայից, այլ Լեհացու բառարանից։

Պատկանեանի հրատարակութեան մէջ, 1877-ին, այս գրուածքը չկայ, իսկ Նրա յառաջաբանից տեղեկանում ենք, որ իւր հրատարակութեան ամբողջ նիւթը ստացել է Վենետկից՝ Հայր Ալիշանից։ Ուրեմն և պէտք է ենթադրել, որ այդ Թուին Վենետկում անծանօթ էր այս գրութիւնը։ Առաջին անգամ մեր բազմահմուտ և ալեզարդ ծերունին է, որ շատ անգամ ամբողջ հատուածներով վկայութիւններ է բերում այս գրուածքից իւր Շիրակում (1881) և յետոյ «Այրարատում», զանազան անուանակոչութիւններով (Համարողական Առեղծուածք Անանիայի, Շիրակ եր. 4, ծնթ. 7, եր. 5, սիւն. ա̅, Թուաբանական Հանելուկք, Շիր. եր. 2, Թուաբանական Առեղծուածք, Այրար. եր. 138 ևլն)։ Սակայն 1886-ին Հ. Զարբ. «Հին Դպր. Պատմութեան» մէջ դեռ ևս չէ յիշած այս գրութիւնը, որով և հայագէտների մեծամասնութեանը մնում է ցարդ բոլորովին անծանօթ։

Մեր այս հրատարակութեան բնագիրը շարուած և սրբագրուած էր արդէն, երբ շնորհակալութեամբ ստացանք պ. Գր. Խալաթեանցի նոր մեծ աշխատութիւնը՝ „Армяскій Эпосъ въ Исторіи Моисея Хоренскаго, Москва, 1896“, ուր առաջ են բերուած այս գրուածքից հատուածներ Վիեննայի Մխիթարեանների մատենադարանի մի ձեռագրից, որի մէջ Շիրակացու այս գրութիւնը ունի հետևեալ վերնագիրը. «Անանիայի Շիրակունւոյ՝ յաղագս կատարման համարողութեան և կերպից հարցման» (տե՛ս Խալաթ. երկասիրութեան մասն Ա, եր. 223. ծնթ. 1)։ Թէ այս վերնագրից, որ իմ հրատարակութեան միայն Ա. ձեռագրում է գտնւում և Թէ պ. Խալաթեանի մէջ բերած 7-դ հարցումից (եր. 223) ապա-

հովութեամբ կարելի է մակաբերել, որ Վիեննացիների ձեռագիրը իմ Ա խմբից է, ունենալով նոյն առաւելութիւնները և միևնոյն թերութիւնները (պ. Խալ-ը հատուածներ է մէջ բերում Անանիայի 7, 9 10, 21 Հարցումներից)։

Իմ Ա-ը մի բոլորգիր, անթուական ձեռագիր է, մեր հիմնական մատենադարանի ծողովածուներից, № 596, 33 (Կարինեանի 582), փոքրագիր (10×14 սանտիմ.), թուղթ, կաշեկազմ. անվարժ և տգեղ գրչութիւն, ընդամենը 321 թերթ. Շիրակացուն վերաբերեալ մասը սկսւում է 178b երեսից և վերջանում է եր. 208b. Այս ձեռագրում Շիրակացուց առաջ գտնւում է հետևեալ վերտառութեամբ գրուածքը. «Յաղագս Թ̄ երանութեանցն, զոր ոմանք Է̄ թուեն. Արդ ինն երանութիւնքն փրկչին, զոր քարոզեաց ի լերինն ութ են ըստ էութեանն, այլ Է̄ են ըստ աստիճանաց . . .», որից յետոյ սկսւում է Շիրակացին, ինչպէս ասացինք եր. 178 b. «Անանիայի Շիրակունւոյ երիցս երանեալ վարդապետի Վասն Որպիսութեան Կենաց Իւրոց. Ես Անանիայ Շիրակացի ի յանանիայ (sic) գեղջէ, որ բաւանդակեցի զգպրութիւն մերոյ ազգիս հայաստանեաց . . . » (տես Հրատ. Պատկ. 1.)։

Եր. 185 a սկսւում է մեր ներքևում հրատարակած Յաղագս Հարցման և Լուծմանը, այսպիսի վերտառութեամբ և յառաջաբանով.

«ԱՆԱՆԻԱՅԻ ՅԱՂԱԳՍ ԿԱՏԱ(Ր)ՄԱՆ ՀԱՄԱՐՈՂՈՒԹԵԱՆՆ ԵՒ ԿԵՐՊԻՑ ՀԱՐՑՄԱՆ.»

«Զամենայն[ն] ասաց իմաստուն[ն],
«թէպէտ և սակաւ ի բազմաց, եթէ զինչ
«ընդունելութիւնն, զինչ բացորոշութիւն,
«զի՞նչ բազմապատիկ և բոլորովին յաղա-
«գըս բաժանմանց և ապացուցէ՝ պիտանա-
«ցոյ էլոյը առ այսոցն տեսութեանց: Համա-
«ռօտ ձեզ ընծ[185b]այութիւն առնելով
«փորձեցայց ի յետն առաջնոց՝ ձեր ներածու-
«թեան յեղանակս՝ զոր ծերունեացն անցա-
«նելով բանի, ի խորագոյնսն ի բաց կալ
«ի խնդրոյ և պարզագոյնսն չափաւորապէս
«հանդիպելով: Այժ առէն ինչ կարգաւորեալ
«Յաղագս Հարցման և լուծման. Հարցումն
«Ա. Այսպէս լուա[յ] . . . եւն» (տես Ներքևի հրատարակութիւնը)։

ՆԵՐԱԾՈՒԹԻՒՆ ՊՈՐՓԻՒՐԻ
(Վենետ. 1833)

«Ի լինել հարկաւորի, Քրիսաւորիէ,
«և յառ'ս Արիստոտէլի ստորոգու-
«թեանցն վարդապետութիւն, գիտել՝
«զի՞նչ սեռ և զի՞նչ տարբերութիւն և
«զի՞նչ տեսակ, զի՞նչ յատուկ և զինչ
«պատահումն ի սահմանացն բացատը-
«րութիւն և բոլորովին յաղագս բաժան-
«ման և ապացուցի պիտանացուէ էլոյ առ-
«այսոցն տեսութիւն, համառօտ ձեզ ընծա-
«յութիւն առնելով փորձեցայց ի յետն
«առաջնոց ձեր ներածութեան յեղանակս
«զոր ծերունեացն անցանել բանի, ի
«խորագոյնսն ի բաց կալ ի խնդրոյ և
«պարզագոյնսն չափաւորապէս հանդի-
«պելով: Այժ առէն ինչ կարգաւորեալ յա-
«ղագս սեռի և տեսակի» (եր. 227)։

Բ ձեռագիրը չունի այս ամբողջ հատուածը իւր վերնագրով և սկսւում է ուղղակի Հարցումներից, դնելով այսպիսի վերտառութիւն. «Անանիայի Վարդապետի Շիրակունւ(ւ)ոյ (Յաղագս) Հարցման և Լուծման»։

Վաւերական է թւում մեզ Բ-ի սկզբնաւորութիւնը. Անկերև է, ինչպէս պարզ երևում է մեր բաղդատութիւնից, որ Անանիան, կամ մի ուրիշը, Պորփիւրի Ներածութեան սկզբնաւորութիւնը կամեցել է յարմարացնել իբրև յառաջաբան Հարցումներին. Թերևս Շիրակացին ունէր և մի գլուխ իսկապէս «Յաղագս կատարման համարողութեանն և կերպից հարցման» վերնագրով, որի մէջ խօսում էր թուաբանական չորս գործողութեան՝ Գումարման, Հանման, Բազմապատկութեան և Բաժանման մասին (=Ընդունելութիւն, Բացորոշութիւն, Բազմապատիկ և Բաժանմունք), որոնց միայն վերնագրերն են պահուել Ա-ի այս հա-

տուածում, Պորփիւրի բանաքաղը «զոմն ասաց իմաստունն» ասելով, մեր կարծիքով հասկանում է Անանիային. Անտեղի կլինէր, մեր կարծիքով, ենթադրելը, թէ Շիրակացին ինքն է Պորփիւրի բանաքաղը և «իմաստունն» ասելով հասկանում է իւր վարժապետ Տիւքիկոսին, որինը կլինին այդ դէպքում և Հարցումները. Մինչդեռ անկարող է ապացուցութեան, որ Հարցումների մէջ խօսողը ոչ թէ Տիւքիկոսը, այլ ինքը Շիրակացին է («Լուայ ի հօրէն իմմէ, ի Շիրակ առ մեզ եկն, այսպէս լուայ ի վարդապետէն», այսինքն է՝ Տիւքիկոսից, ևն ևն).

Շատ կանուխ, արդէն Ժ-դ դարում առնուազն, Շիրակացու գրուածքները մտել էին ժողովածուների մէջ, ենթարկուելով ժողովածուների նիւթի ընդհանուր վիճակին, այն է՝ համառօտման, կրճատման, անջատման, յաւելուածների և խառնափնդորութեան. Արդէն Մագիստրոսին յայտնի է Շիրակացու գրուածքների այդ վիճակը. «զգիրս Անանիայ Շիրակունւոյ, որ բազում աշխատութեամբ և յածաչու խոնջմամբ հաւաքեալ ի զանազան և յոքնաբեղուն մատենից. յորում և ենթակայացեալ են ոչ միայն քառիցն արհեստք *, այլ բոլոր էակացն խռնմունս . . . զոր նախ քան զքեզ (=Պետրոս Կաթողիկոս Գետադարձ) . . ընդ գրուանաւ ծածկէին» (Նամակ առ Պետր. կաթ. Այս հատուածը կայ և հրատարակուած Հ. Յար. Աւգեր. «Բացատրութիւն Չափ. և Կշռ. Նախնեաց, Վենետ. 1821, յառաջաբ.).

Մագիստրոսից և Գետադարձից կանուխ է մեր № 102 երկաթագիր ժողովածուն, որի Շիրակացուն վերաբերեալ մասը դժբաղդաբար թերի է. ինչպէս տեսանք անցեալ անգամ («Արարատ» փետր.). Այդ հնագոյն ձեռագրում էլ Շիրակացուց հատուածներ կան միայն՝ մեծ և փոքր, և ոչ թէ հեղինակի մատենագրութիւնքն են անընդհատ և միայար, իրենց նախնական վիճակում.

Վերադառնանք Ա ձեռագրին.

Եր. 195a, անմիջապէս Հարցումներին կից հետևում են Անանիայի «Խրախճանականները», եր. 198b, «Յաղագս Կշռոց և Կշռորդաց-ը» (հրատ. Պատկ.), եր. 202a «յաղագս չափոյ և չափուց և պ ա տ ա ր ա ց» (հրատ. Պատկ.), եր. 205a «Թիւք որչափութեանց տանց հին կտակարանաց», եր. 206a «Թիւք որչափութեանց նոր կտակարանացն» (միայն վերնագիրը, չգրուած երես 206b), եր. 207a, առանց վերնագրի «Զմրուխտն կանաչ է» ևն, եր. 208a, վերջին տողում. «վճարումն Անանիայի (208b) Շիրակունւոյ ժողովածոյն, և Քի Այ մերոյ փառք ամէն».

Ա ձեռագրում Անանիայի հատուածներին հետևում է եր. 208b «Քերականութիւնս կոչի ութնգրեանք, զուգեալ ի Դա(ւ)թա Փիլիսոփայէ և ի հռոմա վարդապետէ կոչեցեալ անուն Փիւնիկ ևն».

Բ ձեռագիրը Գէորգ Կաթողիկոսի Ցուց. № 267-ն է. Թուղթ, 15×21, խառն գրչութիւն, մեծ մասամբ նոտր. Բովանդակութիւնն է՝ Պօղոս վարդապետի պատմութիւն ժողովոց Հայոց, հատուածք Յովհան Մանդակունւոյ, Շապուհ Բագրատունւոյ (հրատարակուած, թէև շատ անխնամ կերպով, Սամուէլ Անեցու վերջում, եր. 247—250, Էջմիածին, 1893), Թուղթք Պետրոս պատրիարքի Աղեքսանդրացւոց և Ակակայ **, Թուղթ Անաստաս Թագաւորի ընդդէմ ամենայն հերձուածողաց. կանոն մկրտութեան, զմաղզմայ և զսկիհ օրհնելոյ, Պօղոս վարդապետի ընդդէմ հերձուածոյն Քաղկեդոնի, Թուղթ հռոմոց ի Հայս «Զայնակից և համաձայն ժողովոյն Քաղկեդ.», Թուղթ Արիստոտելի յաղագս առաքինութեանց, եր. 71a յիշատ. «զ ս ա կ ա ւ ա գ ծ ո ղ ս յ ի շ ե ց է ք ի մ ա ք ր ա փ ա յ լ ա ղ օ թ ս

---

* Այս «քառիցն արհեստքը» Խորենացու առեղծուածաւոր այ ք առ քէն է, որի բացատրութիւնը տես Հայկականք Ժ. Բ. — «Ու նախադասեալ է Թուականութեանն եւ Երաժշտականութեանն, որք են ի տարրոց քանակէ տարակացեալք. իսկ Երկրաչափութեանն եւ Աստեղաբաշխութեանն՝ որք են ի շարունակ քանակէ» Մագիստրոս, սոյն նամակում):

** Առաջին Թուղթն ամբողջ, մինչդեռ Զարբ. օրինակում «թերի ի սկզբան», տես Թրգ. եր. 289:

ձեռ և զիս զանարժանս զտէր Աստուածատուր աշակերտս՝ առ ոտս տէր յովանէս կաթողիկոսի գեգերեալ կամք և գծեալ գրոյս անմեղագիր լերուք»։ Երեք երես դատարկ։ Եր. 73a, ուրիշ գրչութեամբ (նոտր)՝ «Անանիայի վարդապետի Շիրակունոյ հարցման և լուծման» (ներքևի հրատ-ը), եր. 76a «Խրատք առակաւոր բանից» ևլն.— Ասի ի բժշկական վարդապետաց . . .» (չէ պատմութիւն)։ Եր. 86b «Գիրք ի վերայ բնութեան հանրական և մասնական, քահանայի ումեմն Իվաչխ (sic)անուն յեսու (հմմտ. Զարբ. Թրգ. եր. 483)։ Եր. 93b Համառ. Պատմ. սբ հայրապ. հայոց Գրիգորիսի վկայասիրի և Ներսէսի Երգեցողի, եր. 94a Խրատք և ցուցակ վասն գաւազան տալոյ ևլն. եր. 94b յիշատ. «Այժմ է [illegible] հայոց ·ՌԼԸ· որ գրեցի [illegible] [illegible] Արդ [illegible]»։ Այս յիշատակարանին հետևում է համառօտ ժամանակագրութիւն հայոց ·ՆԿԷ· թուականից մինչև ·ՌԾԱ· նոյն գրչութեամբ։ Այստեղ վերջանում է Ցովսէփ մանողանի գրչութիւնը եր. 95b։ Ուրեմն Բ ձեռագրի Շիրակացուն վերաբերեալ մասը գրուած է ·ՌԼԸ·=1589 Փրկ. թուին, Կարնոյ քաղաքում, Ցովսէփ դպրի ձեռքով։ Եր. 96a—278a զանազան գրչութեամբ և այլ և այլ բովանդակութեամբ կան ուրիշ շատ հատուածներ, ի թիւս որոց նաև Վարդանայ (Արևելցու) պատմութիւնը (եր. 118a—201b), որի վերջում հետևեալ յիշատակարանը. «[illegible] . . . [illegible] (…)* [illegible] (…) Արդ՝ [illegible] (…) [illegible] Տէր [illegible] Տէր [illegible] . . . . Արդ [illegible] ·ՌԾԷ· . . . .»։

Այսպիսով ուրեմն մօտաւորապէս գաղափար տուած եղանք մեր երկու տարբեր խմբերի Ա և Բ ձեռագրերի մասին։ Գ. Խալաթեանի ձեռքում եղած Վիեննայի ձ—ը, ինչպէս տեսանք, պատկանում է մեր Ա խմբին, նոյնպէս և Հ. Ալիշանի գործածածը, որչափ այդ կարելի է մակաբերել Շիրակում և Այրարատում առաջ բերուած (մեծաւ մասամբ կոկուած ընթերցուածներով) հատուածներից։ Ա ձեռագիրը թէև անթուական, բայց անշուշտ կանուխ է գրուած քան Բ-ը, ինչպէս այդ երևում է գրութեան ձևից և ուղղագրութեան հնաձևութիւնից (ևթև, լուա ևլն)։ Այս երկու խմբերը միմեանցից բաժանուել են ամենայն հաւանականութեամբ երկաթագիր ձեռագրից, այլապէս դժուար կլինի մեկնել մի քանի վրիպակներ, ինչպէս օրինակ երկու ձեռագրին էլ ընդհանուր ·ՎՌ· ընթերցուածը (Դ-դ լուծման մէջ) փոխանակ ·ՎՄ·-ի (Ռ=Մ), որ ենթադրում է երկաթագիր նախագաղափար երկու խմբերի համար էլ։ Եթէ Ա-ը ընդհանրապէս աւելի լաւ է պահուած և համեմատաբար քիչ աղճատուած, դրա փոխարէն Բ-ն ունի տեղ տեղ այնպիսի ընթերցուածներ, որ անպայման կարևոր են բնագիրը վերականգնելու համար։ Վերջապէս Բ-ը ազատ է Պորփիւրի Ներածութիւնից մտած ընդմիջարկութիւնից, որ, ինչպէս հաւանական է ենթադրել, կատարուել է խմբերի բաժանուելուց յետոյ։

Անցնինք այժմ Հարցումներին.

Ա և Ը Հարցումների մէջ յիշւում է Կամսարական Զօրակը և հայերի ապստամբութիւնը։ Այդ ապստամբութիւնը Հ. Ալիշան դնում է 571 թուին, և Զօրակի փոխանակ ունի «Զուրակ» ընթերցուածը (Շիրակ, եր. 5)։ Զօրակ անունը հաւանականաբար նոյնն է, ինչ որ Խորենացու Զօրան (Զօրայ Գնթունի, Զօրայ Ռշտունի), միայն թէ Զօրակ աւելի հին ձև է։ Փախչող պարսիկները ապաւինում են Նախճաւան, որից հետևում

* Զ-ի վերջին մասի թերթերը՝ վերի կողմից՝ մասամբ այրուած են. կրում են նաև ջրի հետքեր, երևի հրդեհի են ենթարկուել։

է որ ընդհարումների տեղը Նախճաւանից արեւմուտք էր գտնւում՝ Այրարատում՝ երեւի Դուինի մօտերքը։ «Հետամուտիկ» գեղեցիկ բառը առաջին անգամն է պատահում այստեղ (Ը Հարց.)։ Հայկ. Բառարանը ունի այդ բառը, դիմացը նշանակելով Շիր. այն է՝ Շիրակացի, առանց վկայութեան, երեւի առնելով Լեհացու Բառարանից։ Զօրակի պատմութիւնը Շիրակացին պատմում է՝ իբրեւ լուած իւր հօրից, Յովհաննէս Շիրակացուց («Ես Անանիա որդի Յովհաննիսի Շիրակայնւոյ» հրատ. Պատկ. եր. 26, մեր՝ տասներորդ դարի երկաթագիր ձեռագիր, № 102 Գ. Կճ Ցուց. եր 29a)։ Ա-ն ունի «ի յաւրէն» ընթերցուածը, (Բ՝ «ի հօրէն»), որ կարող է լինել և թերատ ընթերցուած, փոխանակ «ի յաւր(այ)էն»։ Այս դէպքում Յովհաննէսը կլինի Շիրակացու ոչ թէ հայրը, այլ հօրուն (=յօրայ)։

Բ Հարցումը նոյնպէս առնուած է հայ ժամանակակից կեանքից։ Գանձակ (Թաւրիզից ոչ հեռու)* և Դուին քաղաքների անունները աղճատուել են տգէտ գրիչներից, դառնալով «գանձանակ»և «Թվին», ինչպէս որ Ի Հարցում Թալինը դարձել է «Թողին», սակայն բարեբաղդաբար մեր երկու խմբերը իրար ուղղում են։ Այս և հետագայ հարցումներում ամենայն, հասարակ, երեւոր, չորեւոր բառերը թուաբանական տերմիններ են, որ մեր արդի լեզուով նշանակում են՝ ամբողջ, կէս, մի երրորդ, մի չորրորդ կամ մի քառորդ. «Մարգարիտ «չահուար» (Բ՝ «շահաւոր») ընթերցուածը թողնում ենք բնագրում՝ կարծելով որ այդ կարող է լինել մարգարտի մի որոշ տեսակը։

Գ և Դ Հարցումները բիւզանդական կեանքից են։ Շիրակացին ասում է. «այսպէս լուայ ի վարդապետէն», այն է՝ Տիւքիկոսից, Տրապիզոնում։ «.Վ.Ո.» (=3600) դարձել է «.գ.ռ. և ☙.» անշուշտ նախապէս գրուելով «.գռ. և .ո.» (գ=գ)։ «.Վ.Ո.» ընթերցուածի մի ուրիշ կերպարանափոխութիւնը տեսանք Դ լուծման մէջ։ Իբրեւ թուանշան գործածուող տառերի՝ զանազան գրչութեամբ, այլեւայլ ձեւերով (վ=գռ) գրուելուց առաջացած տեսակ տեսակ սխալները բազմաթիւ են ձեռագրերում և երբեմն լուրջ ուշադրութեան արժանի։ Գ հարցման լուծումից հետեւում է, որ մի կենդինարը հաւասար է 7200 դրամի, սակայն մենք այդ գիտենք Շիրակացու և ուրիշ գրուածքից (Ցաղ. Կշռ. և Չափ. «և է կենդինարն .ԽՄ, դահեկան»)։

Ե-դ հարցումը զինուորական կեանքից է։ »Պատուաւոր, աւագ, հեծեալ» տերմիններ են, նշանակելով որոշ աստիճաններ։ Եղիշէն, որ շատ անգամ իբրեւ որոշ զինուորական աստիճան գործ է դնում «պատուաւոր» տիտղոսը **, Փիլոնի հայ թարգմանութիւնից փոխառած մի ասացուածում նախարար բառը փոխում է պատուաւոր, այսպէս.

Փիլոն***

«Որք միանգամ զմեծ թագաւորն ոչ տեսին, նախարարին և որ ընդ նովաւն՝ գնեն զառաջնոյ թագաւորին զարժանաւորութիւնն»
(Լինելութ. III, Հարց. լգ. եր. 204)

Եղիշէ

«Որոյ ոչ է տեսեալ զմեծ թագաւորն, պատուաւորացն մատուցանէ զերկրպագութիւն»
(Յեղան. Ը)

Երեւի միայն պատուաւորները ունէին այն պատուանշանը, որ Եղիշէի մօտ կոչւում է «պատիւ վարսին» կամ պատիւ արքունի (Վասակի նկարագ.), ուստի և պատուանշանից է ծագում տիտղոսի կոչումը։

Զ հարցման մէջ հռոմը դուրս է բերուած զբօսասէր և որկորեայ, մի բարքագրական մանրամասնութիւն, որով որոշւում է յայտնի չափով եօթներորդ դարի

* Գանձակ Շահաստանը եւ Թաւրէժը, թէեւ երկուսն էլ Ատրպատականում, բայց միեւնոյնը չեն։ Տես դրանց յիշատակութիւնը Փաւստոսում, նաեւ Պատկ. «Խորեն.» Աշխ. ռուս. թրգ. ծնթ. 195։

** «Ձին այր ի նոցանէ՝ ի մեծ պատուաւորացն էր». «ի ձեռն պատուաւոր զօրագլխի. եւլն։ «Պատիւը» այդպիսի որոշ նշանակութեամբ գործածուած տես եւ Ղազ. Փարպ. Վենետ. 1892, եր. 271, 272։

*** Այս եւ նման յաճող դիտողութիւններ, որոնցից հետեւում է, որ Փիլոնի հայ թարգմանութիւնը կանուխ է ժամանակով եւ Խորենացուց եւ Յովհան Իմաստասէրից եւ Շիրակացուց եւ Մամբրէի ճառերից ու Եղիշէից տես Փիլոնի հրատ. Վենետ. 1822, լատին յառաջաբան. Մ. Աւգերեանի, որից եւ լայն կերպով օգտւում են յետոյ ուրիշները, շատ անգամ առանց յիշելու աղբիւրը։

հայերի վերաբերութիւնը դէպի հռոմները։ Ա-ը լրացնում է Բ-ի «գ․ժ․» թերատ ընթերցուածը, վերականգնելով ուղիղը՝ ․ժե․=15, այսինքն է ամբողջի մի տասն և հինգերորդականը։

Ը և Ժ հարցումները նկարագրում են ձկնորսութիւնը Մարմետում, Կամսարականների ոստանում։ Մեր ժողովրդեան այնչափ սիրելի լոքը *, ինչպէս և այսօր, բռնւում էր Նրասխում, իսկ աւելի մանր ձկներ՝ Ախուրեանում։ ուռկանով կամ թարփով։ Հայկ. Բռ. չմտած թարփը կենդանի բառ է, մինչև օրս էլ գործածական։ Ջրընկէցների տակ, մեծ մասամբ ջրաղացների մօտ, շինւում է տախտակամած կամ յատակ ծակոտկէն տախտակներով, կամ ծառի ճիւղերից հիւսած. յատակի չորս կողմը փակուած է լինում։ Բաց է մնում միայն վերևը, որտեղից և թափւում է ջուրը։ Ահա այս շինուածքն է թարփը, որի միջից ջուրը սուզւում է, իսկ ջրի հետ եկած ձկները մնում են յատակի երեսին։ Առուներով հնարաւոր է լինում երբեմն ամբողջ գետակներ կապել թարփի վրայ։ Այս մի արմատական միջոց է ձկնորսութեան, որով բռնւում է թարփից անցնող ջրում եղած բոլոր ձուկը։ Է հարցման մէջ Բ-ն յաջողութեամբ վերականգնում է բնագիրը, լրացնելով Ա-ի թերին, տալով պակասող մի քառորդը կամ չորեորը (տես ընթերց. 8)։ Երկու ձեռագրում էլ «ի Մարմետի» է, մինչդեռ Ալիշան և Խալաթեան կարդում են «ի Մարմետ»։ Ես պահում եմ բնագրում իմ ձեռագրերի միաբան ընթերցուածը, որից երևում է որ ուղղականն է «Մարմետի», մի ձև որ հնագոյն է քան «Մարմետ՛ը»։ Տասներեքերորդ դարում չորս անգամ յիշւում է Մարմետը արձանագրութեանց մէջ, երկու անգամ «Մարմետ» ձևով (Շիր. 117, 129), մի անգամ «Մարմետի» («երկու այգի ի Մարմետի. Շիր. եր. 150), մի անգամ անորոշ («այգին որ ի Մարմետ է վերայ Նրասխա» եր. 120, որ արձանագրութեանց շատ սովորական համառօտագրութեամբ կարելի է կարդալ նաև «որ ի Մարմետի ի վերայ Նրասխա»)։ Այսպէս և Ախուրեանի հնագոյն ձևն ունինք Սարիղամիշի սեպագրի մէջ Ա—խ ո ւ—ր ի—ա—ն ի, իբրև անուն քաղաքի, որ գտնւում էր նոյն անունը կրող գետի սկզբում **։ Պարապելով նախահայկական սեպագրերով, որոնց մէջ տիրում են է վերջաւորութեամբ բառեր (թէ յատուկ և թէ հասարակ անուններում) և փորձելով դրանց հետքը որոնել հայերէնում։ ուշադրութիւնս գրաւեցին այն կարծուածից շատ աւելի բազմաթիւ բառերը, որոնց հին հայերէնում ունեցած է վերջաւորութիւնը յապաւուել է նորում (հիւսիւսի, այծի, արծուի, տեղի ևն ևն)։ Այս կէտի վրայ այժմ աւելի ևս արժէ ուշադրութիւն դարձնել, երբ յայտնի հայագէտ Ն. Մառը, որ նաև հըմուտ է վրացերէնին, թէև անցողակի՝ անսպասելի և նշանակալից կարծիք յայտնեց հայերէնի և վրացերէնի ազգակցութեան մասին ***։ Թերևս հին հայերէնում է-ն ուղղականացուցիչ էր այնպէս, ինչպէս վրացերէնում։ Ցամենայն դէպս շատ հետաքրքրական են լինելու յարգելի ուսուցչապետի յայտնելիքները։

Թ և Ի հարցումները առնուած են Կամսարականների որսերից։ Գէն որսատեղին առաջին անգամն է յիշւում այստեղ. Խորենացին գիտէ Գինայ գետ, որ անպատճառ չէ ենթադրում, թէ նա առել է իւր տեղեկութիւնը Շիրակացուց (Այր. 64, Խոր. Բ, կա.)։ Ի հարցման մէջ որսի մի առանձին տեսակն է նկարագրւում, որ կոչւում էր «բուն կանգնել»։ Որսատեղին շրջապատւում էր բազմաթիւ մարդկանցով և շներով, որոնք խրտնեցնում էին որսը դէպի բունը կամ դարանատեղին. որսի այս ձևը կա-

---

* Համբաւաւոր է եւ Կուրի լոքը (=լոքօ) Թիֆլիզում։

** Սարիղամիշի սեպ. ա. տող, հրատ. Նիկոլսկու №XXI, Археолог. Изв и Зам. 1893 г. № 12. Թէ Ախուրեան գետը, ոչ թէ Ալեքսանդրապոլի մօտով հոսող Արփան է, այլ Արգինայի ջուրը, որի մեծ վտակը սկիզբն է առնում Սարիղամիշի մօտերից տես Շիր. եր. 2։ Նախահայկական բեւեռագրերի բոլորովին անտես առնելը հայագէտների կողմից, իմ կարծիքով սխալմունք է։ Որչափ եւ խնդրական լինի այդ սեպագրերի լեզուն, գոնէ յատուկ անունները տալիս են բաղդատութեան համար ապահով նիւթ։

*** Восточныя Замѣтки С. Петербургск. Универ. 1895 եր. 227—228.

րելի է համեմատել chasse à courre-ի հետ. «Ե ղ բ ա յ ր ա ւ ք ն» ընթերցուածը անշուշտ հին է և վաւերական. Նոյն այդ ձևը կայ և Սմբատ Վրկան—մարզպանի նամակներում (Ձեռ. Գիրք Թղթոց, Տեր և Ուխտանէս, Էջմ. 1871, եր. 59) Ալիշանն ունի «եղբարքն», հաւանականաբար կ ո կ ո ւ ա ծ, ընթերցուածը (Այրար. եր. 138).

ԺԱ հարցումը վերաբերում է վաճառականութեան և բաժի. ԺԲ-ը՝ նաւակի, հարկաւ Երասխի վրայ գործածուող նաւակ. ԺԳ հարցման մէջ խնձորների տեղը Խար, Խարա կամ Իխարա մնում է անորոշ. Մենք կարդում ենք ի Խար՚այ.

ԺԴ հարցման մէջ առաջին անգամ հանդիպում է մեզ փ ա ս՝ իբրև գինու չափ. Նոյն չափն յիշւում Շիրակացու «Խրախճանականների» մէջ, ինչպէս կտեսնենք. Հայկ. Բառգիրքը մի վկայութիւն ունի այս բառին կանոնագրքից, նոյնպէս իբրև գինու չափ՝ «ԺԷ փաս քաղցու», բայց սխալ է մեկնում ասելով «փարչ՝ կամ ը ն թ ե ր ց ի ր թ ա ս». Ընթերցուածի սխալ չկայ և փասը թաս չէ. Փասը գինու որոշ չափ է, թէև դեռ չգիտենք, թէ կարասի քանիերորդ մասը. Նոյնահնչիւն է և նոյն իմաստն ունի գերմանական Fass-ը (=տակառ).

ԺԵ Հարց. մէջ հետաքրքրական են «կովեան, այծեան» և մանաւանդ «եզնի» ձևերը.

ԺԶ և ԺԹ հարցումներում խօսւում է եկեղեցու վրայ. «Գաղատոս» բառը ցոյց է տալիս, որ եկեղեցի շինողների մեծ մասը յոյներ էին այն ժամանակը, ինչպէս և այժմ. Արդէն Փաւստոսից գիտենք, թէ ինչպէս լաւ էին գնահատւում յոյն որմնաշէն—գաղատոսները (Փաւստ. Ե, Վ). Թուերի մի քանի սխալներ Ա և Բ ձեռագրերն ունին միատեսակ, որից և հետևում է, որ այդ վրիպակ ընթերցուածները շատ հին են և այս երկու խմբերի անջատումից առաջ. Այս հարցում ԱԲ ունին միայն .ԼԵ. փոխանակ .ԼԹ.-ի, չորրորդ լուծման մէջ .ՎՈ.=.ՎՄ., Թ հարցման մէջ .Զ.=.Գ., ԻԱ հարցման մէջ .ՀԾ.=.ՀՀ.

ԺԷ հարցում՝ նաւ, կէտ, նաւահանգիստ, ինչպէս և ԻԴ-ում «աթենացւոց քաղաքի» աւազանները ցոյց են տալիս, որ այս հարցումների նիւթն առնուած է բիւզանդական՝ հաւանականաբար՝ գրաւոր աղբիւրներից.

ԺԸ հարցման մէջ հանդիպում ենք ամանների, որոնցից «ապաղարէ» և «մեսուր» առաջին անգամ. Ապաղարէի «ա պ ա ր խ ա ր է» և «ա պ ա ր խ օ ր է» ընթերցուածները մօտեցնում են այդ բառը մեր այժմեան «ա պ խ օ ռ ի՚ն» (պղնձի խորունկ աման, թասի, մածունի համար գլխաւորապէս). Պէտք է որոնել պարսկերէնում.

ԻԱ հարցման մէջ վերջին անգամ յիշւում են Կամսարականները. 24 խնդրից վ ե ց ո ւ մ յիշատակութիւն կայ Կամսարականների (Ա, Է. Ը. Թ. Ի. ԻԱ), մնացածների մեծ մասումն էլ գործողութիւնը կատարւում է նրանց շուրջը, նրանց կալուածներում. Շիրակում, Երասխի, Ախուրեանի ափին, այնպէս որ այս թուաբանական խնդիրների ժողովածուն կարելի է համարել Կամսարականների գիրքը. Թերևս գրուած նաև մի Կամսարականի համար. Եթէ Մամիկոնեանների, Բագրատունիների, Արծրունիների նման չունեցան նրանք իրենց պատմիչը, այս ժողովածուն մասամբ լրացնում է այդ պակասը. ԻԱ հարցման մէջ յիշուած Արշաւրի որդիքը՝ Սահակ*, Ներսեհ և Հրահատ Կամսարականները, նոյն այն Կամսարական-

* Այդ նշանաւոր արձանագրութիւնը կարօտ է վերաստուգութեան, Շիրակում եղած օրինակը շատ անբաւարար է: Արձանագրութեան մէջ յիշուած Մ ա ն ա ն հ ա զ ա ր ա պ ե տ ի մասին Հ. Ալիշանն իրաւամբ ասում է, թէ «Մանանն հազարապետ անծանօթ է մեզ ի պատմութենէ», յետոյ աւելացնելով՝ թէ «քաջիկ իմն քննելի են տառք արձանիդ, թերեւս Մանանն իցէ Վահան մեծն եւ քաջն Մամիկոնեան»: Բայց Վահան Մամիկոնեանը հազարապետութեան պաշտօն չէ վ ա ր ե լ. յաջող ապստամբութիւնից յետոյ նա ստացաւ Վաղարշից «Մամիկոնէից տ է ր ո ւ թ ի ւ ն ը» եւ «Հայոց սպարապետութիւնը» (Ղազ. 1891 եր. 607—608), յետոյ Անդեկանի միջնորդութեամբ նաեւ մարզպանութիւնը: Իսկ ապստամբութիւնից առաջ հ ա ւ ա տ ա փ ո խ էր եւ «ուխտահատի» վրայ հսկող, մի տեսակ՝ հանքերի վերակացու

ներն են, որոնց յիշում է Ղազար Փարպեցին։ Սահակի անունը պահուած է և Տեկորի արձանագրութեան մէջ, որ իմ գիտնալով հայ տառերով և հայ լեզուով հնագոյն արձանագրութիւնն է մեզ հասած (Շիրակ, եր. 132, տես և եր. 4) *.

Այս հարցման մէջ «յաղթել պատերազմաւ Բահղլճացն» ես հասկանում եմ Բաղլի (Առաւօտին) բնակիչներին, և ոչ թէ հիւսիսային (կովկասեան) լեռնականներին (տես Խալաթ. յիշուած երկ. I եր. 277, II, 64)։ Բոլորովին այլ է, մեր կարծիքով, Փաւստոսի յիշած «Բաղասճաց» վաչկատուն ցեղը (Փաւստ. Գ, է).

Այս հարցմանս մէջ առաջին անգամն է պատահում գարիկպետ պաշտօնի անունը և խորաւարան կամ խորթարան սպայապետի կոչումը (տիտղո՞ս թէ ազգանուն)։ Իրանագէտներին է մնում մեզ բացատրել այդ և ճշտել։ «Եւ եկեալ ի Վաղարշապատ՝ տայ ի սուրբ եկեղեցին զ ·ԺԶ· մասն գերւոյն» ասացուածը յիշեցնում է Ղազարի նման հատուածը, ուր նկարագրում է Վահանի ուխտը (Էջմիածնի) կաթուղիկէին **.

ԻԲ հարցման լուծումը մեծ դժուարութիւն պատճառեց ինձ իւր առեղծուածական ձևովը։ Թուերի (տառերի) երկար և խառնակ շարքը (տես Ա և Բ-ի ընթերցուածները Լուծմանց մէջ) մնում էր ինձ համար անվերծանելի իբրև մի ծածկագրութիւն։ Հարկ եղաւ մանրակրկիտ խուզարկութիւն այդ առեղծուածը լուծելու համար։ Լուծման բանալին տըւեց ինձ ԺԹ հարցումը իւր Լուծումով։ Այդ խնդրի պատասխանը սովորական թուերով պէտք է լինէր՝ 21 ամբողջ և եօթն ութերորդական ($\frac{7}{8}$)։ ԺԹ Լուծմունքը այս պատասխանի փոխանակ տալիս էր՝ «իա, c (կամ o), ՛գ, ՛ը», ուրեմն և այս լուծման վերջին մասը՝ «c, ՛գ, ՛ը» = եօթն ութերորդականի ($\frac{7}{8}$)։ Անհրաժեշտ էր ուրեմն ենթադրել, որ մի կոտորակի փոխանակ ունինք երեքը, որոնց գումարը պէտք է հաւասար լինի եօթն ութերորդականի ($\frac{7}{8}$)։ Եւ յիրաւի, ՛գ նշանը համարելով մի քառորդ, ՛ը նշանը—մի ութերորդ և c նշանը—կէս՝ կստանանք ուղիղ պատասխանը ($\frac{1}{2}+\frac{1}{4}+\frac{1}{8}=\frac{7}{8}$)։ Այստեղ գիտելու մնում է դեռ մի ամենակարեւոր կէտ։ Ինչո՞ւ համար մի կոտորակի փոխանակ երեքը։ Անհրաժեշտ էր դառնում ենթադրել, որ Անանիայի ժամանակ չէին ըմբռնում և չէին կարող գրել այնպիսի՝ եթէ կարելի է այսպէս ասել՝ բարդ կոտորակ, որի համարիչը մէկից աւելի է։ Պէտք է անպատճառ կոտորակն ունենար միաւոր համարիչ։ Այսպէս ուրեմն՝ նրանք ասում էին հասարակ, երևոր, չորևոր, այսինքն է՝ կէս, մի երրորդ, մի չորրորդ, բայց չէին ասում երեք քառորդ ($\frac{3}{4}$)։ Երեք քառորդի գաղափարը տալու համար ստիպուած էին դիմել միաւոր համարիչ ունեցող կոտորակների և ասել՝ կէս և մի քառորդ՝ և այս երկու թիւը չէին կարող գումարել։ Այս նախապատրաստութիւնից յետոյ դառնանք ԻԲ հարցման լուծմանը.

---

(եր. 404)։ Իմ կարծիքով այդ արձանագրութեան մէջ յիշուած հազարապետը պէտք է լինի պարսիկ Վեհնամը, որ Հայոց հազարապետ էր ճիշտ Վահանի ապստամբութեան ժամանակ եւ ապստամբների երեսից փախաւ։ Վեհնամ հազարապետը բնակւում էր Շիրակում, ուրեմն եւ Տեկորի մօտ (եր. 407, 415)։ Ղազարի մէջ երկու անգամ է յիշւում Վեհնամ հազարապետի անունը, տպագրում մի անգամ սխալ ընթերցուածով վեհ Վեհնամ (407), միւս անգամ ուղիղ՝ Վեհնամ (եր. 569)։ Ղազար Փարպեցու միակ օրինակը, որից ծագել են Էջմիածնի եւ Վենետիկի օրինակները— լոկ ընդօրինակութիւններ եւ այն ընդմիջարկութեամբ—երկու անգամն էլ ունի Վեհնամ։ Ղազարի ձեռագրերի մասին շուտով առիթ կունենամ խօսելու։ Այսպէս ուրեմն եթէ արձանագրի Մանանը այս Վեհնամն է, այն ժամանակ այդ արձանագրութիւնը կանուխ է Վահանի ապստամբութիւնից։ Եւ որովհետեւ հայ այբուբենի վերջնական կարգաւորումը Մեսրովբի ձեռքով յամենայն դէպս չէ առաջ 412 թուականից, ինչպէս առիթ կունենանք շուտով այդ տեսնելու, ուստի եւ հազիւ 70 տարով ուշ է այս արձանագրութիւնը մեր այբուբենի սկզբնաւորութիւնից։ Թէ տառերի ձեւի եւ թէ բովանդակութեան կողմից հետաքրքրական այս արձանագրութեան լուսանկարը եւ էստամպը շատ կարեւոր են. այլապէս անհնարին կլինի վերջնական եզրակացութեան հասնել։

** «Եւ գային ի քաղաքն Վաղարշապատ … կատարէին զուխտս եւ զնուէրս ի սուրբ եկեղեցւոյն կաթուղիկէի եւ ապա յիւրաքանչիւր տեղիս նահատակելոց կուսանաց». (Ղազ. Վենետ. 1891, եր. 645)։

Պէտք է 100 կարաս գինին բաժանել 10 նախարարներին «ըստ տասնեկի պատուոյն»։ Այս փոքր ինչ անորոշ ասացուածը ես հասկանում եմ այսպէս. նախարարների տասն աստիճան կամ պատիւ կար, սկսելով ստորինից՝ երկրորդը առաջինի կրկինը պէտք է ստանար, երրորդը առաջինի երեքպատիկը, չորրորդը առաջինի քառապատիկը ևլն. Ուրեմն բաժանումը պէտք է լինէր յառաջատուութեամբ (progression)։ Այսպէս ըմբռնելով հարցումը՝ պատասխանը պիտի ստանանք.

ցածից սկսելով առաջին նախարարը կստանար $1\,^9/_{11}$ կարաս գինի, երկրորդը $3\,^7/_{11}$, երրորդը $5\,^5/_{11}$, չորրորդը $7\,^3/_{11}$, հինգերորդը $9\,^1/_{11}$, վեցերորդը $10\,^{10}/_{11}$, եօթներորդը $12\,^8/_{11}$, ութերորդը $14\,^6/_{11}$, իններորդը $16\,^4/_{11}$ և տասներորդը $18\,^2/_{11}$, գումար=100 կարաս։

Բայց մենք տեսանք, որ Շիրակացու ժամանակ չպիտի կարողանային գրել ինը տասնևմէկերորդ ($^9/_{..}$), այլ այդ կոտորակը պիտի արտայայտէին մի շարք կոտորակներով, որոնց համարիչը լինէր մէկից ոչ աւելի և գումարը հաւասար ինը տասնևմէկերորդի։ Նոյն ձևով պիտի գրուէին և միւս կոտորակները։ Այժմ դառնանք մեր ձեռագրերին։ ԱԲ առաջին նախարարի ստացած բաժինը գրում են «— ը ե ժ ծէ»։ Մեր վերևում տուած բացատրութեան համաձայն այդ պատասխանը պէտք է վերծանել այսպէս՝ մի ամբողջ, կէս, մի հինգերորդ, մի տասներորդ, մի յիսունևհինգերորդ, որի գումարը պէտք է հաւասար լի մի ամբողջ և ինը տասնևմէկերորդի, եթէ միայն ուղիղ էին մեր վարկածները։ Եւ յիրաւի՝

$$1 + ^1/_2 + ^1/_5 + ^1/_{10} + ^1/_{55} = 1\,^9/_{11}$$

Ուրեմն առեղծուածը կարելի է լուծուած համարել։ Բոլոր տասն շարքի կոտորակներն էլ արդարացնում են մեր բացատրութիւնը։ Պատասխանի ընթերցուածները և մեր վերականգնած բնագիրը տե՛ս Լուծմունքներում։ Ձ-ներում կէտերը, կոտորակների վրայ դրուած թաւերը տեղ տեղ չփոթուած են, պատահում են և սովորական վրիպակներ (է=ե, գ=դ ևլն), բայց առեղծուածաւոր շարքերի յաջող վերծանութիւնը բոլորովին ապահով է։

Եթէ այս այսպէս է՝ և մեր ապացուցութիւնը հիմնաւոր, ապա ուրեմն հարկ կլինի ընդունել և այն, որ մինչև մեր այս բացատրութիւնները՝ ուղիղ չէին հասկացւում մեր հին մատենագրութեան մէջ պատահող բոլոր այն հատուածները, որոնց մէջ «բարդ», այն է՝ մի համարիչից աւելի ունեցող կոտորակներ կան։ Այդպիսի կոտորակները պիտի արտայատուէին անհրաժեշտաբար մի շարք «պարզ» կոտորակներով։ Մեր այս բացատրութիւններից յետոյ այդպիսի հատուածների ուղիղ ըմբռնումը հնարաւոր է դառնում և բոլորովին դիւրանում։ Բերենք երկու օրինակ։ Հանգուցեալ Ք. Պատկանեան իւր լուրջ և գիտնական մի հրատարակութեան մէջ (Армянская Географія VII вѣка по Р. Х.=«Խորենացու Աշխարհագրութիւն», Պետերբուրգ 1877) հանդիպում է մի այդպիսի հատուածի, հարկաւ առանց կարողանալու կնճիռը լուծել. «..Մասն է հինգ հարիւր ասպարէզ... չորեքկուսի, որպէս զի լինել մասինն եւթանասունև մի մղոն, չորք եւթնէ քսանևութ» (Հայերէն բնագ. եր. 3)։ Ռուսերէն թարգմանութեան ծանօթութեան մէջ (եր. 9, ծնթ. 16) իրաւամբ նկատում է, որ բնագիրը մութն է, ինքը տալիս է կարելի միտքը. մղոնն հաշուելով 7 ասպարէզ, մի մասում (աստիճան) պիտի լինի ոչ թէ 71, այլ 71 և երեք եօթներորդ ($^3/_7$) մղոն*։ Բայց բնագրում հէնց այդպէս էլ է, միայն թէ չէ հասկացուել՝ 71 մղոն, մի չորրորդ (չորք), մի եօթներորդ (եօթն), մի քսանևութերորդ (քսան և ութ), որոնց գումարն անում է երեք եօթներորդ։ $71 + ^1/_4 + ^1/_7 + ^1/_{28} = 71\,^3/_7$

---

* Ահա հատուածիս թարգմանութիւնը «Такъ что въ градусѣ заключается 71 миля; (а четыре стороны квадратной мили) равняются 28 аспарезамъ, ибо 4 раза 7 составляетъ 28»։ Փակագծից սկսած ամբողջ տողի փոխարէն պիտի լինէր միմիայն՝ երեք եօթներորդ։

Աւելի անաղարտ է պահուած բնագիրը Հ. Արսէն Սուքրեանի հրատարակութեան մէջ, թէև այստեղ էլ թարգմանիչը վրիպել է ուղիղն ըմբռնելուց։ Ահա այդ ուղղագոյն բնագիրը. «որպէս զի լինել մասինն եօթանասուն և մի մղոն և չորեակ (1/4), եօթնեակ (1/2) և քսան և ութեկ մի (1/8)* Նախնական բնագրում ամենայն հաւանականութեամբ էր «եօթանասուն և մի մղոն և ·դ՛, է՛, ի՛ը·»։ Երկրորդ օրինակ. Սուքրեանի հրատարակած աւելի ընդարձակ բնագրում կայ մի հատուած, որտեղ հանդիպումէ մեր «կէս» ցոյց տուող նշանը (C), բայց ուղիղ չէ հասկացուել. «Ցեառն . . ծայրն ի ներքս գայ ի յՈվկիանոս առաւել քան զայլ երկիր՝ մասունս երիս, [C], որ լինի ասպարէզք հազար հ ի ն գ հարիւր յիսուն.» եր. 14. Հրատարակիչն աւելացնում է ծանօթութեան մէջ. «Ցօրինակին կայ առ ե ր ի ս բառի՝ ձև մի իբրև C, որ թուի նշանակել զտասներորդ մասին, այսինքն զատիճանի. զի զմասն ասաց 500 ասպարէզ լինել, և երեք մասունք լինի 1500. իսկ աստ աւելի կայ և 50 ևս որ է 1/10 (մի տասներորդ) մասին»։ Բայց մենք շատ օրինակներից տեսանք, որ C նշանը ոչ թէ մ ի տ ա ս ն ե ր ո ր դ, այլ կ է ս է նշանակում, որի վրայ և հիմնուած կարող ենք վերականգնել բնագիրը՝ հ ի ն գ հարիւրը սրբագրելով ե օ թ ն հարիւր (ե=է)=«մասունս երիս և C (կէս), որ լինի ասպարէզք հազար եօթն հարիւր և յիսուն»։ (Կէս ատիճանն =250 ասպարէզ)։

Այս օրինակները բացի այն, որ վերստին երաշխաւորումեն մեր բացատրութեանց հիմնաւորութեանը, մեզ մատնացոյց են լինում նաև մի նրբին կապի վրայ, որ կայ Շիրակացու և «Խորենացու» Աշխարհագրութեան մէջ. Շիրակացու կոտորակները, բոլորովին յար և նման ձևով գործ են ածւում ուրեմն և այդ երկասիրութեան մէջ. Յայտնի է, որ Պատկանեանը տրամադիր էր «Խորենացու» այդ Աշխարհագրութիւնը՝ թէև ենթադրաբար միայն և առանց դրական ապացոյցների, վերագրել Շիրակացուն (տես ռուս. թրգ. յառաջաբան)։

ԻԳ հարցման մէջ մկները կերել են Շիրակացու ամբողջ 200 կ ա յ թ գարին. Կայթն ունինք գործածուած Սուրբ Գրքում զանազան առմամբ (տես Ց. Աւգեր. Բացատր. Չափ. և Կշ. կ ա յ թ և գ ո մ ո ր բառերը, նաև Հայկ. Բառ.)։ Այժմ միայն՝ Շիրակացու այս հարցումը հնարաւորութիւն է տալիս մեզ ճիշտ որոշել կայթի չափը, կշիռքը. Պատասխանից երևում է, որ ·ՃԳ ՑՊ· է եղել մկների թիւը, այն է՝ 103 բիւր և 6800 մուկ, իւրաքանչիւրը կերել է 80 հատ գարի. Բոլոր կերած գարին, որ 200 կայթ էր, հաւասար է 80 անգամ 1·036·800, որ անում 82·944·000 գարեհատ, կամ հայկական թուերով ·Փ՟ՄՂ՟Դ Ց·, ուրեմն մի կայթն ունի 414·720 գարեհատ, կամ աւելի կարճ՝ մի կայթըն է վ ա թ ս ո ւ ն լ ի տ ր. (Լիտրը 12 ունկի, ունկին 576 գարեհատ, (տես Ցող. Չափ. և Կշ.)։ Այսպիսով ուրեմն ճիշտ որոշւում է կայթի չափը, այն է՝ 60 լիտր. Կայթն հանդիպում է և արձանագրութեանց մէջ. Հայոց ·ՆԻ· թուին Խոսրովանոյշ թագուհին հաստատում է Տեկորի ուխի շ ա ր ե ա տ ը մի կայթ, ուրեմն 60 լիտր (Շիրակ. 133)։

ԻԴ հարցումը, ինչպէս արդէն նկատեցի, հաւանականաբար Շիրակացին առել է գրաւոր աղբիւրից, կամ լսել է Տիւքիկոսից. Խնդրի պատասխանը պէտք է լինի 32 վայրկեան և ո ւ թ տ ա ս ն և մ է կ ե ր ո ր դ (8/11), մինչդեռ Լուծման կոտորակների գումարն է 32 և մ ի տ ա ս ն ե ր կ ո ւ ե ր ո ր դ վայրկեան կամ՝ 32 վայրկեան և 5 մանրերկրորդ. Երևի զանց են առնուած աւելի մանր կոտորակները։

Գալուստ Տ. Մկրտչեան.

30 մարտի.

---

** Ֆրանսերէն անյաջող թարգմանութիւնն է „la partie est de 500 stades carrès, ainsi' la partie fait 71 milles et quatre fois sept (?!) et vingt—huitième. (Géographie dè Moïse de Corène, par Arsène Soukry, Venise 1881, p. 4, եր. 7):

## (բ73a) ԱՆԱՆԻԱՑԻ ՎԱՐԴԱՊԵՏԻ ՇԻՐԱԿՈՒՆ[Ի]ՈՅ [ՑԱՂԱԳՍ] ՀԱՐՑՄԱՆ ԵՒ ԼՈՒԾՄԱՆ

*Ա Հարցումն·* Այսպէս լուայ[1] ի հաւրէն[2] իմմէ[3], եթէ[4] ի ժամանակի պատերազմացն[5] Հայոց ընդ Պարսս[6] սաստիկ քաջութիւնք[7] լինէին ի կամսարականէն Ջաւրակայ· որպէս[8] թէ ամսաւրեայ աւուրբք երիցս յարձակեալ ի վերայ զաւրացն պ[ա186a]արսից՝ և հարկանէր յառաջնումն զկէս զաւրուն· և ի հետ մնեալ հարկանէր յերկրորդումն[9] զչորրորդ մասն զաւրուն· և յերրորդումն[10] զմետասաներորդն[11]։ Եւ մնացեալքն անկանէին փախստեայ[12] ի Նախճաւան, թուով ·ՄՁ·։

Արդ պարտիմք և մեք իմանալ մնացելովքս, եթէ[4] յառաջ քան զկոտորումն ո՞րչափ էին։

*Բ Հարցումն·* Այր մի յիմոց մերձաւորաց գումարտ լեալ ի Բաղէ եգիտ մարգարիտ շահուայ[1]։ Եւ դարձեալ ի տուն և հասեալ ի Դանձակ[2] վաճառեաց զհասարակ մարգարտին[3] զհատն յիսուն[4] դրամ։ Եւ եկեալ [ա186b] ի Նախճաւան[5] վաճառեաց զչորևոր մասն մարգարտին եւթանասուն[6] դրամ զհատն[7]։ Եւ հասեալ ի Դուին[8] վաճառեաց զերկոտասաներորդ[9] մասն մարգարտին[10] զհատն ·Ծ· դրամ։ Եւ մինչ[11] ի Շիրակ տա մեզ եկն և ունէր մնացեալ մարգարիտս[12] հատս ·ԻԴ·։ Արդ գիտեա՛[13] մնացելովքս[14], թէ ամենայնն[15] քանի՞ մարգարիտ[16] է և կամ քանի՞ դրամ[17] գինք մարգարտին։

---

**Ա**

1· Ա «լուա»
2· Ա «ի յաւրէն»· Բ «ի հօրէն»
3· Բ «իմէ»
4· Ա «եթե»
5· Բ «պատերազմաց»
6· Բ «ընդ պարս»
7· Բ «քաջութեամբ»
8· Բ գաղափարագիր·
9· Բ «և ի յերկրորդումն»
10· Ա «և յերկրորդումն»
11· Բ «զմետասաներորդ»
12· Ա «փախստեաս»· Բ «ի փախստեայ»

**Բ**

1· Բ «շահաւոր»
2· Բ «ի գանձանակ»
3· Բ «մարգարիտն»
4· Բ «·Ծ·»
5· Բ «ի Նախջաւան»
6· Ա «յեւթանասուն» «յ» գիրը ջնջման նշանով·
7· Բ «զհատն ·Հ· դրամ»
8· Ա «ի Թվին»
9· Բ «զ ·ժբ· աներորդ»
10· Բ չիք
11· Բ «և մի ինչ»
12· Բ «զմնացեալ մարգարիտն»
13· Բ «և արդ գիտեայ»
14· Բ «զմնացելովքս»
15· Բ «ընդ ամենայն»
16· ԱԲ «մարգարիտն»
17· Բ «դրամք»

Գ. Հարցումն. Այսպէս լուա[յ] ի վարդապետէն, եթէ¹ գողեան մտին ի Մարկիանոս Տրիկլին² [բ73b] և գողացան զկէս և զչորրորդ գանձուն. և մնեալ [ա187a] գանձատան գումարն ·ՆԻԱ· կենդինար և ·Վ· և ·Ո· դահեկան³։ Արդ գիտեա՛ ի մնացելոցս, թէ ամենայնն ո՞րչափ էր գանձին⁴։

Դ. Հարցումն. Հաւգ¹ ուխտին² Սրբոյ Սոփեայ³ զհինգ⁴ մասն առնուն սարկաւագունքն և տասն⁵ մասն առնուն քահանայքն և ·Մխ· լիտր առնուն եպիսկոպոսունքն և ·Ս·⁶ լիտր⁷ այլ ուխտն։ Արդ գիտեա՛, թէ ընդ ամենայն⁸ քանի՞ լիտր լինի հաւքն⁹։

Ե. Հարցումն. Հաւք սպայիցն¹ բաշխի այսպէս. չորս² մասն պատուաւորացն³, ·Ը· մասն աւագացն⁴ և ·ՃԾ· կենդինար այլ հեծելոցն։ Արդ գիտեա՛⁵ թէ ընդ ամենայն⁶ քանի՞ կենդինար լինի։

[ա 187b] Զ¹ հարցումն. Հազար կայր իմ ի պարտէզի² և հոռոմ մի եմուտ ի պատճառս զբաւսանաց և³ եկեր զհինգ և զ·ժե·⁴. մասն հազարոյն։ Եւ իմացեալ իմ զորկորէութիւն⁵ առն հանի զնա⁶ արտաքս և մնեալ համարեցի և գտի ունջ ·Ճ· և ·Ժ·⁷։ Արդ գիտեա՛, թէ ընդ ամենայն քանի՞ ունջ լեալ է հազարն և կամ քանի՞ ունջ կերեալ է հոռոմին⁸։

Է. Հարցումն. Ես ի Մարմետի էի¹, յոստանի կամ[ս]արականաց²,

---

Գ

1. Ա «եթե»
2. Բ «ի մարկենոս ատրիկլին»
3. Բ «գումն ·Նիա· կենդինար ·Վ· ու. և Ո» (=·ՎՈ· այն է՝ ·Վ·=3000 և Ո·=600)
4. Բ «Արդ գիտեայ ի մնացելոցն, թէ ընդ ամենայն ո՞րչափ լինէր գանձն»

Դ

1. Բ «Հաւք»
2. Ա «ուխտին»
3. Բ «սրբոյն Սոփիայ»
4. Բ «զ.ե.»
5. Բ «զ.Ժ.»
6. Բ «.բռ.»
7. Ա «լետր»
8. Ա «ընդ ամենայնն»
9. Բ «Հաւք»

Ե

1. Բ «իսպաիցն»
2. Բ «.դ.»
3. Ա «պատս. ուաւորացն». Բ «պատուաւորաց»
4. Բ «աւագաց»
5. Բ «գիտեայ»
6. Ա «ընդ ամն»

Զ

1. Ա չիք
2. Բ «իմ պարտիզի»
3. Բ չիք
4. Բ «և զ .Ժ.» (=Ժե=15).
5. Բ «զորկորութիւն»
6. Բ «զնայ»
7. Բ «հարիւր և .Ժ.»
8. Բ «Արդ գիտեայ թէ ամ քանի ունջ լեալ է հոռոմին».

Է

1. Բ «[ ]ս ի մարմետի է ( )»
2. Ա «կամարականաց» Բ «կամարակայանաց»

և իրթեալ յեզր գետոյն՝ որում [3] Ախո[ւ]րեանն [4] կոչեն, տեսի [5] երամս ձիանց և ետու արկանել ուռկան [6]։ Եւ հանին զհասարակն [7] և զ ·դ· [8] և զ ·է· [ա 188a] երամոյն։ Եւ որ յուռկանէն զերծաւ ի թարփ ընկաւ. և անցեալ գտի զնոսա քառասուն և հինգ [9]։ Արդ գիտեա՛ սոքաւք, թէ ընդ ամենայն [10] երամն քանի՞ ձուկն լեալ է։

Ը հարցումն. Ի ժամանակի ապստամբութեանն հայոց ի պարսից և սպանանելոյն [1] կամսարականին Զաւրակայ [2] զՍուրէն, դեսպան արձակեաց ոմն յազատաց [3] հայոց առ թագաւորն պարսից գո՞յժ արկանել նմա. և գնայր աւուրն յիսուն [4] մղոն։ Եւ զկնի ·ժե· աւուր իմացեալ կամսարականին Զաւրակա[յ] հեծամանիկս առաքէր զկնի ունել զնա [5], որք գնային աւուրն ·Ձ· մղոն։ Արդ գի[ա 188b]տեա՛ [6], եթէ քանի՞ աւուր հասանէին նմա [7]։

Թ հարցումն. Ոմն էր կամսարականացն ի Գէն [1] և կալեալ էր երէ [2] բազում. [ք 74a] և ինձ որսամասն [3] ետուն բերել վարազ մի։ Եւ վասն զի անարի էր տեսլեամբն՝ կշռեցի [4] և գտաւ փորոտին ·դ· [5] մասն ամենայն կշռոյն [6], և գլուխն ·գ· մասն, ոտքն ·ի· [7], ժանիքն ·ղ· [8], անձըն ·Մ· և ·ԺԲ· լիտր [9]. Արդ գիտեա՛ [10], թէ ընդ ամենայն քանի՞ լիտր էր վարազն։

Ժ հարցումն. Լոք [1] մի կալան ի Մարմետ [2] ի գետն Երասխ [3] և ես կշռեցի զնա և գտաւ գլուխն չորս [4] մասն ամենայն կշռոյն, և տուտն

3. Բ «յորում»
4. ԱԲ «ախորիեանն»
5. Բ «և տեսի»
6. Բ «ուռկանս»
7. Բ «զհասարակ»
8. Ա պակասում է «և զ·դ·»
9. Բ «զնոսայ ·խ· և ·ե·»
10. Բ «թէ ամենայն»

Ը

1. Ա «սպանելոյն»
2. Բ «կասարականին և զօրակայ». Ա «զաւրակա»
3. Ա «արձակ ոմն յազատզաց»
4. Բ «·ծ·»
5. Բ «զնայ»
6. Բ «գիտեայ»
7. Բ «նմայ»

Թ

1 Ա «ի քէն»
2. Բ չիք
3. Բ «որսայմասն»
4. Բ «կշռեցին»
5 Բ «չորս»
6. Բ «կշռոցն»
7. Բ «ոտքն ·ի· մասն»
8. ԱԲ «գ»=6. Պէտք է ուղղել՝ ·ղ·=90.
9. Ա «լետր»
10. Բ «գիտեայ» Նյսպիսի ուղղագրութեամբ և ներքևում.

Ժ

1. Ա «լոկ»
2. Բ «մարպետին»
3. Ա «ի գետ յերասխ»
4. Ա «·գ·»

·Ջ·, և մէջքն ·Ճխ· լիտր: Արդ գիտեա՛ թէ ընդ ամենայն[5] քանի՞ լիտր էր:

[ա 189a] ԺԱ Հարցումն· Այր մի վաճառական էանց ընդ երիս քաղաքս և բաժ[1] արարին յառաջնումն և հանին զկէս[2] և զերևոր իբացն: Եւ յերկրորդ քաղաքին թուեցին զոր ինչ ունէրն և հանին[3] զկէս[2] և զերևորն· և յերրորդ քաղաքին անդրէն այլ թուեցին և հանին զկէս և զերևորն[4]: Եւ մինչ ի տուն եկն[5] մնացեալ էին դահեկանք ·ԺԱ·: Արդ գիտեա՛ թէ ընդ ամենայն քանի՞ դահեկան ունէր:

ԺԲ Հարցումն· Նաւակ մի առնել կամէի և իմ ·Գ· գրամկունք իսկ կային և այլ ինչ ո՛չ կայր· և ասացի ցմերձաւորս իմ՝ Տո՛ւք ինձ մէն մի[1] սակաւ ինչ· որ առնեմ[ա189b]զնաւակս: Ոմն ետ ·Գ· կշռոյն, և ոմն ետ զ·Դ·[2], և ոմն զ·Ջ·, ոմն զ·Ե·, և ոմն զ·ԻԸ·[3]: Եւ իմ առեալ աբարի զնաւակն: Արդ գիտեա՛ թէ ընդ ամենայն քանի՞ դրամ էր նաւակն:

ԺԳ[1] Հարցումն· Ոմն յաշակերտաց իմոց առեալ խնծորս գեղեցիկս ի Խորայ գայր ընծայեցուցանել ինձ: Պատասխեցան նմա երեք[2] պարք ի խաղուց[3] և հանին՝ առաջին պարն զկէսն և զ·Դ· մասն խնծորոյն, նոյնպէս և երկրորդն զկէսն և զ·Դ· մասն[4], նոյնպէս և երրորդն[5]: Եւ զմնացեալսն[6] եբեր առ իս խնծորս ·Ե·: Արդ գիտեա՛ թէ ընդ ամենայն քանի՞ լեալ է[7]:

ԺԴ[1] Հարցումն· Գինի կայր ի մի կարասի· վա[ա190a]րդիւ կազմեալ էին· և Թակոյկք կճեա[յ] երեք[2]: Եւ հրամայեցի հանել զգինին անդր· մին տարաւ զերեք[3] մասն և մինն զ·Ջ·[4], իսկ միւսն զ·ԺԴ·[5], և զմնա-

---

5· Ա «ընդ ամ̃ն»· այսպէս և ներքևում

ԺԱ

1· Բ «բաժ»· յետոյ սրբագրած՝ «բաժին»
2· Բ «զկէսն»
3· Ա «և հան· և հանին»
4· Բ «զկէս զերևորն»
5· Ա «եկ»

ԺԲ

1· Ա «մէն մի»
2· Ա «և մն զ·գ·»
3· Բ «զ·իէ·» սխալ ընթերցուած =·ԻԸ·,

ԺԳ

2· Բ չիք
2· Ա «երեւ» Բ «·Գ·»
3· Ա «ի խաղոց»
4· Բ չիք «խնծորոյն, նոյնպէս և երկրորդն զկէսն և զ·Դ· մասն»
5· Բ· «երրորդ»
6· Բ «զմնացեալս»
7· Բ «էր»

ԺԴ

1· Բ սխալմամբ «ԺԳ»
2· Բ «և Թակոյկ գ· կըճայք»
3· Բ «զ·գ·»
4· Բ «մին զկեցն»
5· Բ «զ·ժգ· մն»

ցեալն [6] յայլ ամանս հանէին, և էր փաս ․ՄԳ․։ Արդ գիտեա՛ թէ ամենայնն [7] քանի՞ էր լեալ։

ԺԵ [1] հարցումն․ Զի մի կայր ինձ ազնիւ [2] վաճառեցի և գնոցն ․Դ․ մասինն կովեան գնեցի [3], [բ74a] և ․Լ․ մասինն այծեան, և ․Ֆ․ մասին եզնի, և ․ՑԺԸ․ դաշեկանի ոչխարս առի։ Արդ գիտեա՛ թէ ընդ ամենայն քանի՞ դաշեկան լինի։

ԺԶ [1] հարցումն․ Ես եկեղեցի շինէի․ գաղատոս մի կալայ [2], որ ածէր աւուրն ․ձխ․ քար, և յետ [ա190b] ․Լթ․ [3] աւուր գործառնութեանն [4] միւս այլ գաղատոս կալայ [2], և ածէր աւուրն ․ՄԺԸ․ քար։ Եւ որպէս նա նմա [7] հաւասարեաց՝ եկեղեցին կատարեցաւ։ Արդ գիտեա՛ եթէ ի քանի՞ աւրն [7] հաւասարեաց։

ԺԷ [1] հարցումն․ Նաւ մի երթայր լի ցորենով և կէտ մի զհետ մըտեալ նաւին՝ նաւորդքն [2] երկեան և ընկեցին նմա [3] կեր զհասարակ [4] ցորենոյն։ Եւ յ․Բ․ [5] աւուրն ընկեցին զհինգ մասն մնացելոյն․ յերրորդումն [6] զ․Ը․, ի չորրորդումն զ․Է․։ Ապա ի նաւահանգիստն [7] հասին և մնաց ․ԽՄ․։ Արդ գիտեա՛ թէ ընդ ամենայնն [8] քանի՞ լեալ էր։

ԺԸ [1] հարցումն․ Ապաղարէ [2] մի էր իմ [ա191a] խանգարեցի [3] և այլ ապաս արարի․ զ․Գ․ մասն մեսուր մի արարի և զչորրորդ մասն այլ [4] մեսուր արարի և զ․Ե․ մասն [5] ․Բ․ բաժակս արարի՝ և զվեցն երկու [6] բա-

---

6․ Բ «զմնացեալսն»
7․ Բ «ընդ ամենայն»

ԺԵ

1․ Բ սխալմամբ «ԺԴ»
2․ Բ «Զի կայր ազնիւ»
3․ Բ «և գնեցի ․դ․ մասեանն կովեան»

ԺԶ

1․ Բ սխալմամբ «ԺԵ»
2․ Ա «կալա»
3․ ԱԲ «լե»․ Անշուշտ ուղղելի՝ «Լթ»
4․ Ա «գործառութեանն»
5․ Բ «․բՃ․ և ․ժը․»
6․ Բ «նմայ»
7․ Բ «թէ քանի՞ օր»

ԺԷ

1․ Բ սխալմամբ «ԺԶ»
2․ Բ «նաւորդք»
3․ Բ «նմայ»
4․ Բ «զհասարակաց»
5․ Բ «յերկու»
6․ Բ «և յերրորդումն»
7․ Բ «և ապա և ապա ի նաւհանգիստն»
8․ Բ «ընդ ամենայն»
9․ Ա «լեա"»

ԺԸ

1․ Բ սխալմամբ «ԺԷ»
2․ Բ «ապարխարէ»
3․ Ա «խանկարեցի»
4․ Բ չունի «մեսուր մի արարի և զչորրորդ մասն այլ»
5․ Բ «և զ ․ե․ մասն և զ ․ե․ մասն»
6․ Բ «․բ․»

կուտեղս արարի. և երկու հարեւր և ․ժ․ [7] դրամէ սկաւառակ մի արարի։ Արդ գիտեա՛, թէ ընդ ամենայնն քանի՞ էր լեալ ապաղարէն [8]։

ԺԹ Հարցումն. Այր մի յերիս եկեղեցիս եմուտ [1] և խնդրեաց յաստուծոյ յառաջնումն, եթէ [2] Տո՛ւր ինձ որչափ ունիմս և տամ քեզ ․ԻԵ․ դահեկան։ Նոյնպէս և յերկրորդումն ետ ․ԻԵ․ն, նոյնպէս և յերրորդումն [3]։ Եւ առ իւր ոչինչ մնաց [4]։ Արդ գիտեա՛, թէ [ա191b] յառաջն քանի՞ ունէր։

Ի Հարցումն. Ներսեհի կամսարականի Շիրակայ [1] և Արշարունեաց տեառն բուն կանգնէր առ ստորոտով լերինն, որում Արտին կոչեն։ Եւ ի գիշերի միոջ մտին երամակք ցռուց բազումք։ Եւ ոչ լեալ ատակ որսորդացն՝ ընթացեալ [2] պատմեցին նմա ի գեաւղն Թալին [3]։ Եւ նորա իւրովի [4] եկեալ հանդերձ եղբայրաւքն և ազատաւքն [5] [բ75a] և մտեալ կոտորէին զերէոն։ Եւ եղեն կալեալք ի Թակարդի [6] հասարակ երէոցն. և եղեն սպանեալքն նետիւ չորս [7] մասն. և զմատաղերէն ողջ կալան, որ եղև ․ԺԲ․ [8] մասն. [ա192a] և եղեն մեռեալք ի նիզակէ ․ՑԿ․ [9] երէ։ Արդ գիտեա՛, թէ ընդ ամենայնն [10] քանի՞ լեալ էին։

ԻԱ Հարցումն. Ներսեհ կամսարական որդի Արշաւրի [1], անուանակից և նախնի այսմ Ներսեհի [2], ի յաղթել պատերազմաւ [3] Բահղըճացն [4] առնու զերի սաստիկ յոյժ։ Եւ հասեալ ի դուռն արքունի ընծայեցուցանէ Թագաւորին պարսից զհասարակ գերւոյն։ Եւ թուեալ [5] զհասարակն՝ ևս ընծայէ որդւոյ [6] արքայի ․է․ մասն։ Եւ հրաժարեալ ի նոցանէ դառնա[յ] յաշխարհն [7] իւր։ Եւ եկեալ ի տուն [8] գարեկպետի՝ յոյժ մեծարի

---

7. Բ «․մժ․»
8. Բ «ընդ ամենայն քանի՞ լինէր ապարխօրէն»

ԺԹ

1. Բ «մտանէր»
2. Բ «թէ»
3. Բ «և յերկրորդումն նոյնպէս ․իե․ և յերրորդումն․»
4. Ա «չմնաց»

Ի

1. Ա «Շիրակա»
2. Ա «ընթացեալք»
3. Բ «Նմայ ի գեղն Թողին»
4. Բ «իւրովին»
5. Բ «եղբայրօքն և ազատեաւքն»
6. Ա «ի Թաւկարդի» աւելորդ չէն ջնջիչ նշանով. Բ «ի կաթարթին»
7. Բ «․դ․»
8. Բ «․բժ․ան»
9. Բ «․գճկ․»
10. Բ «թէ ամենայն»

ԻԱ

1. Ա «արշաւրի» Բ «արշորի»
2. Բ «Ներսէհի»
3. Բ «պատերազմացն»
4. Բ «Բախլըճեացն»
5. Բ «թողեալ»
6. Բ «որդոյ»
7. Բ «յաշխարհս»
8. Բ «ի տունս»

ի Նմանէ, [ա192b] ոչ որպէս[9] զնախարար, այլ որպէս[9] զմի ոք ի Թագաւորաց։ Եւ սա տայ[10] Նմա[11] զ․Ը․ մասն գեր[ւ]ոյն։ Եւ եկեալ առ սպարապետն[12], զոր խորաւարանն[13] կոչեն, և առաւել ևս ի Նմանէ մեծարեալ՝[14] տա[յ] Նմա զ․ԺԴ․ մասն գեր[ւ]ոյն։ Եւ ևս յառաջ եկեալ՝ հասանէ յաշխարհ իւր՝ և ընդ առաջ լինի Նմա եղբայր իւր կրտսեր[15] Հրահատ, և տա[յ] Նմա զ․ԺԳ․ մասն գերւոյն[16]։ Եւ ևս յառաջ եկեալ՝ ընդ առաջ[17] լինին Նմա ազատքն Հայոց և տայ Նոցա զԺՆ մասն գերւոյն[18]։ Եւ եկեալ ի Վաղարշապատ՝ տայ ի սուրբ եկեղեցիսն[19] զ․ԺՋ․ մասն գերւոյն[16]։ Եւ եկեալ Սահակ աւագ[20] եղբայր իւր՝ տա[յ] [ա193a] Նմա զ․Ի․ մասն գերւոյն[16]։ Եւ իւր մնաց ․ՇՀ․[21] անձն[22]։ Արդ գիտեմ, թէ ընդ ամենայնն քանի՞ է լեալ[23]։

ԻԲ Հարցումն․ Փարաւոն արքայ եգիպտաց[ւ]ոց պատուէր զաւր ծննդեան իւրոյ և սովորութիւն[1] էր Նորա յաւուրն յայնմ տալ ․Ժ․ Նախարարացն ըստ տասնեկի[2] պատուոյն ․Ճ․ կարաս գինի խնկով[3] կազմեալ։ Արդ բաժանեսջիր[4] զայդ[5] ըստ պատուոյն[6] ․Ճ․ տասնեկին[7]։

ԻԳ Հարցումն․ Շտեմարան[1] մի[2] էր իմ յորում կայր[3] գարի կայթ ․Մ․[4]։ Մկներ մտին և զամենայն գարին կերան[5]։ [բ75b] Ես մուկըն[6] մի կալայ ի Նոցանէ և պատուհասեցի։ Նա խոստով[ա193b]անեաց[7] և ասէ․ Ցես ․Ջ․ հատ եհաս։ Արդ գիտեմ, թէ ընդ ամենայնն քանի հատ լեալ էր[8] յշտեմարանին և կամ քանի՞ մկունքն որ կերանն[9]։

---

9․ Բ գաղափարագիր․
10․ Ա «տա»
11․ Բ «Եւս տայ Նմայ»
12․ Բ «սպարապետն»
13․ Ա «խաւարանն» լուսանցքում աւելացրած «որ» = «խորաւարանն», Բ «խորթարան»
14․ Ա «մայնեալ»
15․ Բ «կրսեր»
16․ Բ «գերոյն»
17․ Բ «ընդ յառաջ»
18․ Բ «և տա Նմայ զ ․Ժ․ մասն գերոյն»
19․ Բ «ի սուր եկեղեցիսն տայ»
20․ Բ «աւագք»
21․ Ա «․շծ․» Բ «․եՃծ․» ուղղելի ․չհ․, ․Ծ» =Հ.
22․ Բ չիք
23․ Բ «ընդ ամենայն քանի՞ լեալ էր»․

ԻԲ
1․ Ա «սովորութիւնն»
2․ Ա «․Ժ․եկի» Բ «․Ժ․Նեկի»
3․ Ա չիք․
4․ Բ «բախանեսջիր»
5․ Բ «զայտ»
6․ ԱԲ «ըստ պատուոցն»
7․ Բ «․Ճ․ ու ․Ժ․Նեկին»

ԻԳ
1․ Ա «ըշտեմարան»
2․ Բ չիք
3․ Բ «կայի»
4․ Բ «․րՃ․»
5․ Բ «և կերան զամենայն գարին»
6․ Բ «և ես մուկ»
7․ Բ «խոստովանեցաւ»
8․ Բ «ընդ ամենայն քանի՞ է հատ լեալ էր»
9․ Բ «մկունք որ կերան»

ԻԴ Հարցում. Երեք աւազանք էին ի քաղաքին աթենացւոց[1] միաչափք և երեք[2] ագուգայք գային յաւազանսն[3]։ Մի[4] ագուգայն քանզի յորդ էր[5] ի ժամ մի լնոյր զաւազան[ս]ն. երկրորդն[6] նուազ քան զնա՝ յերկու ժամս[7] լնոյր[8]. և երրորդն[9] առաւել նուազ՝ յերեք ժամս[10] լընոյր[8]։ Արդ գիտեա՛ թէ մինչ ի միասին խառնին ագուգայքն՝ ի քանե՞որդ[11] մասն ժամու լնուն[12] զաւազանսն։

---

Լուծում Ա հարցմանն. [ա194ա] Ցառաջ քան զկոտորածն էին ·ՌՉԿ·[1] հեծեալ։

Լուծում Բ հարցմանն. Լեալ էր[1] մարգարիտն հարեւր և քառասուն և չորս[2] հատ և գին մարգարտին ·ՑՁԻ· դրամ։

Լուծում Գ հարցմանն.[1] Լեալ էր[2] գանձն կենդինար[3] ·ՌՈՁՁ·։

Լուծում Դ հարցմանն. Լինի հաւգ[1] ուխտին ·ՎՄ·[2] լիտր[3]։

Լուծում Ե հարցմանն. Լինի հաւգ[1] ապայիցն կենդինար[2] ·Մխ·։

Լուծում Զ հարցմանն. Լեալ էր ունչ[1] հազարոյն ·ՃԾ·։

Լուծում Է հարցմանն. Լեալ էր[1] ընդ ամենայն ձուկն ·Նի·[2]։

---

ԻԴ

1. Բ. «աթենացոց»
2. Բ «·բ·»
3 Ա «քային յաւազանն»
4. Բ «մին»
5. Բ «յորդոր է»
6. Ա «երկրորդ»
7. Բ «ի ·բ· ժամն»
8. Բ «լնոյր զաւազանն»
9. Ա «երեքն» Բ «և ·գ·ն»
10. Բ «ի յերրորդ ժամն»
11. Բ «ի քանի՞ երրորդ»
12. Բ «լնու»

Ա

1. Բ «·ռէճկ·»

Բ

1. Ա «լեալ է»
2. Բ «·ճխդ·»

Գ

1. Ա գրեթէ միշտ համառօտ՝ «լուծ», «լուծմունք», «լծ» ևլն.
2. Ա «լեալ է»
3. Ա «կենդ»

Դ

1. Բ «հոռք»
2. ԱԲ «·վռ·» = 3600, պէտք է լինի ·ՎՄ· = 3200, Ռ = Մ, երկաթագրի վրիպակ.
3. Ա «լետր»

Ե

1. Բ «հոռք»
2. Ա «ապայիցն կենդենար»

Զ

1. Բ «ունչ»

Է

1. Բ «լինեալ էր» այս ուղղագրութեամբ և ներքևում մի քանի անգամ.
2. Բ «·դծի·»

Լուծումն Ը հարցմանն· հասանէին յաւուրս [1] ·իե·։

Լուծումն Թ հարցմանն· Լեալ էր վարազն ·ցկ· [1] լիտր [2]։

Լուծումն Ժ հարցմանն· Լեալ էր լոքն [1] ·Մխ· [2] լիտր [3]։

Լուծումն ԺԱ հարցմանն· Ունէր վաճառականն դահեկանս ·ՍՑՀՁ· [1]։

Լուծումն ԺԲ հարցմանն· Լեալ էր նա[ա194b]ւակն [1] ·խբ· դրամ։

Լուծումն ԺԳ հարցմանն· Լեալ էր խնձորն [1] ·ցի·։

Լուծումն ԺԴ հարցմանն· էր գինին [1] փաս հարեւր և քսան և վեց [2]։

Լուծումն ԺԵ հարցմանն· Լեալ էր գինք ձիոյն [1] վեց հարեւր և տասըն և վեց [2] դահեկան։

Լուծումն ԺԶ հարցմանն· հաւասարեաց գաղատոսն յաւուրս [1] ·հ·։

Լուծումն ԺԷ հարցմանն· [բ76a] էր հացն ի նաւին · իԴՌ· կայթ։

Լուծումն ԺԸ հարցմանն· Լեալ էր ապաղարէն ·ՏՄ·։

Լուծումն ԺԹ հարցմանն· Լինի դաշեկան ·իԱ· c· գ̂· ը̂· [1]։

Լուծումն Ի հարցմանն· եղև ընդ ամենայն երէն [1] ·ՍՃԿ·։

Լուծումն ԻԱ հարցմանն· Լեալ էր ընդ ամենայն գերին [1] ·ՍՄխ·։

Լուծումն ԻԲ հարցմանն· [1]

---

Ը

1· Բ «աւուրս»

Թ

1· Բ «·գճկ·»
2· Ա «լետր»

Ժ

1· Ա «լոգն»
2· Բ «·բճխ·»
3· Ա «լետր»

ԺԱ

1· Բ «·ռսյհզ·»

ԺԲ

1· Ա «լեալ է նաակն»

ԺԳ

1· Ա «լեալ է խնձորն»

ԺԴ

1· Բ «գինին այն»
2· Բ «փաս ·ճժզ·», ժ=ի·

ԺԵ

1· Բ «ձիուն»
2· Բ «·զճ· և ·ժզ·»

ԺԶ

1· Բ «յաւուրն»

ԺԹ

1· Բ «լինի դաշեկան ·իա· օ· գ́· ը́·» Ա «·իա· c· գ̂́· ր́· ի·» վերջին «ի» հետևեալ քսաներորդ լուծման թուահամարն է, շփոթմամբ այս պատասխանի մէջ մտած· c կամ օ նշանը=$^1/_2$, գ̂=$^1/_4$, ը́=$^1/_8$·

Ի

1· Բ «երէսն»

ԻԱ

1· Բ «գերիսն»

ԻԲ

1· Ընթերցողի դիւրութեան համար դնում եմ նախ՝ խնդրի լուծումը (պատասխանը) սովորական թուանշաններով, ապա երկու ձեռագրերի ընթերցուածները·

Ա. ա, c, ե, ՟ժ, ծ՟ե։
Բ. գ, c, ՟ժ, ՟խ, ձ՟ը։
Գ. ե, ՟գ, ժ՟ե, խ՟դ, ՟կ, կ՟զ։
Դ. է, ՟ե, ՟ի, խ՟դ։
Ե. թ, ժ՟ա։
Զ. ժ, c, ՟ե, ՟ժ, ի՟բ, ՟լ, լ՟գ։
Է. ժբ, c, ՟ժ, ի՟բ, ՟լ, լ՟գ, ծ՟ե։ [ա195a]
Ը. ժդ, ՟գ, ՟ժ, ժ՟ե, ի՟բ։
Թ. ժզ, ՟ե, ՟ժ, ի՟բ, ծ՟ե։
Ժ. ժը, ժ՟բ, ի՟բ, լ՟գ խ՟դ։

Լուծումն ԻԳ հարցմանն. Նեալ է յշտեմարանին գարեհատ .Փ՟ՄՂ՟՟ԴՏ[1] և լեալ են մկունք կերաւղք գարւոյն[2] .ՃԿ.ՅՊ.։

Լուծումն ԻԴ հարցանն. Զուգախառնեալ ագուգայքն լնուն. զաւազանսն ի .՟դ, ՟զ, ժ՟զ, ժ՟ը. մասն ժամուն[1]։

---

ա. $1 + 1/2 + 1/5 + 1/10 + 1/55$ $(= 1\ 9/11)$
բ. $3 + 1/2 + 1/10 + 1/40 + 1/88$ $(= 3\ 7/11)$
գ. $5 + 1/3 + 1/15 + 1/44 + 1/60 + 1/66$ $(= 5\ 5/11)$
դ. $7 + 1/5 + 1/20 + 1/44$ $(= 7\ 5/11)$
ե. $9 + 1/11$ $(= 9\ 1/11)$
զ. $10 + 1/2 + 1/5 + 1/10 + 1/22 + 1/30 + 1/33$ $(= 10\ 10/11)$
է. $12 + 1/2 + 1/10 + 1/22 + 1/30 + 1/33 + 1/55$ $(= 12\ 8/11)$
ը. $14 + 1/5 + 1/10 + 1/15 + 1/22$ $(= 14\ 6/11)$
թ. $16 + 1/5 + 1/10 + 1/22 + 1/33$ $(= 16\ 4/11)$
ժ. $18 + 1/12 + 1/22 + 1/33 + 1/44$ $(= 18\ 2/11)$

Ա ձեռագրի ընթերցուածը. «ա. աcե. ՟ժ ծ՟է ՟բ գ c. ՟ժ խ՟ձ ՟ը. ՟զ ՟ե. ՟գ ՟ժ. Փ (ընջինջնշանով) ՟ե. խ. գ. ՟կ. կ՟զ. ՟է. ՟է ՟ե ՟ի խ՟գ. Ե թ. ժ՟ա. ՟զ ժ c ե ժ ի բ լ լ՟գ է ՟ժ ՟բ. ՟ժ ի՟բ ՟լ լ՟գ ծ՟ե [ա195a] ՟ը. ժ՟դ ՟գ՟ժ ժ՟է ի՟բ. ՟թ. ժ ՟զ. ՟եժ ՟ի՟բ ծ՟ե. ՟ժ. ժը ժ՟բ ի՟բ լ՟գ խ՟դ»

Բ ձեռագրի ընթերցուածը. «Մինն ՟զ (ընջուած). ՟ա օ ե ժ, ծէ Բ. գ. օ ՟ժ խ՟ ձ՟ը. Երիսն. է ՟գ ՟ժ ե ՟խ գ, կ կ ՟զ. Դ. է, ի, խ՟գ. Ե ՟թ ժ՟ա. Զ. ՟ժ օ ե ժ. ի՟բ ՟ը. լ. գ. Է. ժ բ օ. ՟ժ. ի՟բ. ՟լ. լ գծէ. Ը. ժ՟դ ՟գ՟ժ. ՟ժ է ի բ. Թ. ժզե՟ ժ՟ ի՟բ ծ՟է. Ժ. ժըժ՟ բ ժբ. ՟լգ խ՟դ.»

ԻԳ
1. Բ չիք «.ա.»
2. Բ «կերող գարոյ»

ԻԴ
1. Բ. «ի. ՟դ ՟զ՟ժ. ՟զժ ՟ը մասն ժամուն» կարդալ. $1/4 + 1/6 + 1/16 + 1/18$ մասն ժամուն։ Շատ յաջող է վերջացնում այս Բ ձեռագրի գրիչը գնելով հետևեալ համառօտ յիշատակարանը. «եղբայր օրինակն այսպէս էր և չեմ ի հասկանալ, մի մեղադրել սխալանաց, զի ոչ եմ հմուտ բանիս»։

# ԱՆԱՆԻԱ ՇԻՐԱԿԱՑԻ

## Գ.

ՑԱՂԱԳՍ ՇՐՋԱԳԱՅՈՒԹԵԱՆ ԵՐԿՆԻՑ վերտառութեամբ հասել է մեզ Անանիա Շիրակացու անունով մի փոքրիկ, ամփոփ գրութիւն, բաղկացած 12 գլխից։ Անանիայի այս երկասիրութիւնը հրատարակելու ծառայել են ինձ երկու ձեռագիր։ Ա ձեռագիրը մի ընտիր գրչութիւն է, բոլորգիր, գլխակարգութիւնները կարմրագեղով, թուղթ, կաշեկազմ, 16×20 հրմետր, միայար տողերով։ Այս ձեռագիրը Գէորգեան Ցուցակի № 295-ն է, «Տօնապատճառ հաւաքածոյ» մակագրութեամբ։ Սկզբից թերի է, մինչև 109-դ թերթը մկներից կերուած, կամ ինչպէս Ցուցակն ասում է «մկնակերեալ և ցեցակերեալ»։ Բայց այս «մկնակերութիւնը» պատահել է ամենայն հաւանականութեամբ հայոց ՌՀԹ թուից յետոյ, երբ ձեռագիրը նորոգուել է և կազմուել, մինչդեռ մկներից կերուած մասը այժմ էլ մնում է առանց ն ո ր ո գ ո ւ թ ե ա ն։ Նորոգութեան յիշատակարանը Զ-ի գրուած վերջին երեսն է (478a), ահա այդ յիշատակարանից մի քանի տող. «Նորոգեցաւ սուրբ գիրքըս, որ կոչի տաւնապատճառ .... ձեռամբ փծուն գրչի Նուաստ քահանայի, յիշատակ տէր Բարսեղ վարդապետին, վերակիտողի Համիթ մայրաքաղաքի, որ ստացաւ զսա ի հալալ արդեանց իւրոց յիշատակ հոգւոյ իւրոյ և հոգևոր ծնաւղին իւրոյ և ուսուցչին տէր Սրապիոն վարդապետին, որ եղև Կաթողիկոս և անուանեցաւ Գրիգոր, և մարմնաւոր ծնաւղացն, եղբարցն և քվերցն և ամենայն արեանառու մերձաւորացն։ Եւ եդ յիշատակ ի դուռն Սուրբ Առաքելոցն, որք հանգիպիք .... Կազմեցաւ տառս .ՌՀԹ. թուին, ի հայրապետութեան տէր Մովսէս Կաթողիկոսին»։

Զ-ի մեզ հետաքրքրող ոչ-կրօնական մասը սկսւում է 431a երեսից՝ «Գ ր ի գ ո ր ի Ե ր ո ւ ս ա ղ է մ ա ց ւ ո յ Սահմանք զանազանք. արտորոշեալք ըստ սրբոց և ծայրագոյն վարդապետաց. Ցաղագս տարբերական և այլ և այլ անուանց» գրութեամբ, որի սկզբնաւորութիւնն է.

—Զինչ է Աստուած. Աստուած՝ վսեմական և ինքնաբուն գոյութիւն»։ Այս մեզ համար նոր՝ Գրիգոր Երուսաղէմացու գրուածքը՝ քաղուածքներ են Դաւիթ Անյաղթից և Նիւսացուց, կարօտ առանձին ուսումնասիրութեան։ Այդ քաղուածքներին հետևում է եր. 451b, մեր հրատարակածը՝ Ցաղագս Շրջագայութեան Երկնից, ա ռ ա ն ց Ա ն ա ն ի ա յ ի ա ն ո ւ ա ն։ Սրան անմիջապէս կից, եր. 454a, հետևում է «Անանիայի Ցաղագս Երկնի» և յետոյ՝ «Պաւղոսի Աղեքսանդրացւոյ Նախերգան ի Ներքսածութեան եայլն»։ Այս վերջին երկուսը տես Պատկանեանի հրատարակութեան մէջ։ Սրանց հետևում է գրչի մի ոտանաւորը * (եր. 474b) և ապա՝ Զ-ի մեծ յիշատակարանը։ Փոքր յիշատակութիւններ գրչի կամ

* Դնում ենք այդ ոտանաւորը, որ հետաքրքրական է լեզուի եւ մանաւանդ կազմութեան կողմից։
Ի չափ երկոտասանիցն պարզեալ ոտից հոմերականն արհեստի սուղ ինչ բան։

| | | |
|---|---|---|
| Գրութեան տառիս | Ներցուցողի | զփաստս տաւնից |
| եղեւ Նըպաստ | ոմն ի գըչաց | ի բնաւս անարգ. |
| Եկեալ յերկրէ | հեռաստանէ | ի գիտ բանի |
| եւ պատահեալ | քաջն ուսուցչի | որում բաղձայր։ |
| Եւր իսկ եւ իսկ | ապա հարկի | յումն եղբաւրէ, |
| այն ինչ յաւաւրս | գրեթէ հասեալ | վարժից բանի, (Ա 475a) |
| Բաբունական | անուանն ի ճահ | զոլ արժանի |
| սակըս սիրով | խոկմանն յաւրէն | ըս տեառըն ցանգ։ |
| Գորովական | խանդիւ տառիս | այսմիկ բաղձայր, |
| լինել Նըպաստ | եւ ծեռընտու | իւրըն փութ։ |
| Պատանեկին | ապա մաղթեալ | ոչ հրաժարէ, |
| թէպէտ եւ չէր | Նա բաւական | առ այն խնդիր։ |
| Այլ հայելով | առ յոյժ Նորայն | փափագ սիրոյ |
| եւ հրամանին | փոքծի լըցաւղ | զոլ ըստ կարի. |
| Տագնապ հասեալ | ապա եւ այլ | իմըն հարկի, |
| յայսը փութոյ | վրիպէր պաշտել | զնա պաքապով։ |

տացողի կան շատ անգամ, ինչպէս օր. Թ. 169, 198, 340, 398, 461, 470, և այլն. Դընումենք գլխաւոր յիշատակարանի կարևոր կէտերը՝ քաղուածաբար (Զ-ի եր. 475b—477b).

«Փառք.. Որում յոգնատենչ ըղձիւք բաղձացեալ քաջ հռետորն և բանիբուն ճարտարն, միջամուխ մակացուն (476b) աստուածայնոց տառից սրբազան քահանայն Գրիգոր, սպասաւոր բանի, որոյ ներկրթեալ կամացն բարեսէր յաւժարութեամբ և ձեռնտուաւժանդակութեամբ հոգէշունչ ալեաւք ծաղկեալ սուրբ ծերունին աստուածապատուեալ արհի եպիսկոպոսն տէր Գրիգոր, որ ունէր զվերատեսչութիւն պայծառական դիտման քահանայական դասու կատարողապետութեան Այրարատեան նահանգին, ներակայան ունելով զամուրն Բջնի, որ ի նուազեալ ժամանակիս առաքինասէր վարուք պայծառացեալ իբրև զարեգակն փայլէ յաշխարհի, զոր տէր Յիսուս շնորհեսցէ զսա եկեղեցւոյ իւր ընդ երկայն ժամանակս խաղաղական կենօք. ընդ նմին և զհամապատիւ ինքեան ձեռասուն որդեակս իւր հոգևոր զտէր Վարդան հարազատ եղբարբ իւրով, նախայիշեցեալն Գրիգորիւ, որոց կամաւք և յաւժարութեամբ յանկ ելեալ կատարեցաւ Պատճառ—նամակս տաւնից, ի լրումն բաղձանացն Գրիգորի վարդապետի, ի վայելումն անձինն կրթասիրի. և յետ աստեացս վճարման յիշատակ անջնջելի ինքեան և նախաժաման եղեալ ի Քրիստոս ծնողաց և եղբարց, ևս առաւել տեառն վանականի, վերյիշեցեալ աթոռոյս վերադիտողի, և ամենեցուն սոցա ի Քրիստոս սնուցողի. որոյ յիշատակն աւրհնութեամբ և աղաւթքն ի վերայ սոցա և ամենայն աշխարհի. Եւ եղև աւարտ գրչութեան սորա ի ձեռն տարաշխարհիկ պատանւոյ ումեմն Թարմատար գրչի Գէորգայ ի Կիլիկեան նահանգէն, յանմատչելի ամրոցէն Լամբրաւն կոչեցելոյ, որ է ի ստորոտ մեծի լերինն Տաւրոսի, որ ոչ եթէ իբրու ճարտար գոլով յարհեստ գրչութեան յանձնապաստան համարձակութեամբ ձեռնամուխ եղև ի գործ որ ի վեր էր քան զկար նորա, այլ ի յոլով խնամս վայելեալ նախայիշեցեալ արանցս փառաւորաց, և անիճահ վարկուցեալ զանց առնել զպատկառեցուցիչ հրամանաւ սոցին, զարիսխ յուսոյն յաստուած ընկենլով ձեռն ի գործ արկեալ սատարութեամբ նժդեհակցի պանդըխտութեան իւրոյ և դաստիարակի անկատարութեան, Յովհաննու քահանայի, ի շրջագայութեան ամանակաց Թուաբերութեան հայկականս ազին տաւմարի՝ յարաբարդեալ ամաց չորեքտասան յիւնեկաց՝ հանդերձ առաջին կատարեալ Թու(476b)ով վեցեկեաւ ընդ տասնեկի շարամանելոյ. Ի բռնակալութեան կողմանցն արևելից բաժնին Ասիոյ ի վերայ յոլովից տիրեալ ազգաց խուժադուժ և բարբարոս ազգին Նետողաց. ընդ որոց գրաւեալ ծառայութեամբ ծանրա-

---

Այլ եւ խորհրդոց ոչ պատահեալ ըստ պատշաճի,
եւս եւ գործոցն որ արհեստիւ այս ձեռըն տը՛ր.
Նեղասրտեալ յոլով անգամ կըրթիւր յապուշ,
տէ՛ր նա յաւէտ ի զինչն առնել տարակուսէր:
Ի վտանգոյն վտանգն խնամոց կարողացեալ
առ այս նուագ գլխաւորել զառեալս յաւանդ,
Ներողական ձայնիւ ողբուստ փառատրութեան
իբր տրտմու վայելչապէս ձանէ նըմ(ա):
Էթէ իցէ համոյ կամ ոչ տեսանողաց
նա ի յիւրոյն փութոյ չեղեւ գըտեալ վըրէպ:
Գերազանցեալ էր խնդրողին տենչ բաղձանաց,
յորմէ տըւաւ՝ ըն յաղթեցաւ իբր ի վտանգ
Րոպէական իմըն մասամբ զկամս ընծեռեալ,
իբր ըզլումայն երկու զոր արկ այրին առքան.
Եղեալ ստացող տառիս առգրող՛ ըն մեծախոհ
եւ ըզսխալանս՝ ըն ներելով զերկս ընկալցի:
Արժանաւոր լինել եւ ինքն ի Քրիստոսէ,
գտանիլ ներեալ եւ ողորմեալ յաւըն վերջին.
Ցնծալ պարել ընդ բազմերգն յառագաստին,
երրորդութեանն երգել ըզ փառս միշտ ընդ նոսին:

---

գոյն լծոյ հարկապահանջութեան եւ առաւել տունս Հայոց, որպէս երբեմն Իսրայէլ, ի ժամանակս անիշխանութեանն։ Յորում ժամանակի վարէր զառաջնորդութիւն Կիլիկիոյ Հեթում բարեպաշտ, որ էր և նա մտեալ ընդ վերասացեալս հարկաւ։

Այլ .... բռնադատէ զիս աստանաւր թախիծ սրտիս յաղորմելիս յամել պատմութիւն. զի յանցելում ամի, ներգրութեան այսր մատենի, յաղագս ծովացեալ մեղաց մերոց Սուլտանն Մըսրայ բազմաձեռն զաւրու պատրաստութեամբ մահմետական սպայիւ, իբր ի ցասմանէ աստուծոյ ածեալ եմուտ յերկիրն Կիլիկիոյ, որում ոչ կարացեալ զդէմ ունել զաւրքն Հայոց՝ անդէն վաղվաղակի թիկունս դարձուցեալ, պարտեալ, յաղթեալ, լքեալ, վայրավատնեալ, ցրուեալ լինէին, ուրանաւր երկու որդիք Թագաւորին ձերբակալ եղեալ՝ Թշնամեացն ի բուռն անկանէին, կրսերոյն սրախողխող եղեալ, զերէցն գերի վարէին։ Եւ ընդ ցրուել զաւրացն՝ զի և Թագաւորն եւս ոչ եղև պատահեալ յերկրին՝ այնուհետև առանց կասկածի եղեալ բազում նախճիրս և ոճիրս արարեալ, հրդեհեալ գյոլովս ի քաղաքաց և զաւանս նոցին և տապալեալ զեկեղեցիս և զգիրս սուրբս հրոյ մատնեալ, ընդ որս և զարքայանիստ քաղաքն Սիս գեղեցկաշէն ապարանաւք և մեծափառ եկեղեցեաւն սրբուհն Սոփեաւ հրձիգ արարեալ. զբազումս ի սուր սուսերի մաշեալ և զեւս բազումս գերի վարեալ հանդերձ հոլով աւարաւ։ Եւ մաւտ ի լնուլ ամին փոխեալ եղև յաշխարհէ կաթողիկոսն Հայոց տէր Կոստանդին, որոյ ողորմեսցի Քրիստոս։ Այսոցիկ այսպէս եղելոյ՝ խնամքն աստուծոյ ժամանեսցէ ազգի և[ ]Աշխարհացն Հայոց՝ անդորր առնելով ի յոքնադիմի վշտաց.... սխալանաց գրչիս ներեցէք իբրու [477a] տկար բնութեան, վասն զի որպէս յառաջն ասացի, թէպէտ և ոչ ներհուն գոլով մեր յարհեստ գրչութեան, որպէս պահանջէ մեծագոյն այսր իրողութեանս վարկ՝ սակայն և ոչ կամակատար եղև մեզ դիպիլ տեղւոյ և ժամանակի, այլ փոփոխելով տեղի ի տեղւոջէ . . . Թէև մեք եւս ի բարուց ի բարս և ի խորհրդոց ի խորհուրդս լինեաք յեղափոխեալ, վասն որոյ և ոչ կարողանայաք ճահողակի հանդիպել ի գործ արուեստիս, որպէս և ի ստորակայէս յայտերևակ ցուցանի։

Բայց առաջին սկիզբն գրութեան սորա եղև ի տիեզերահռչակ սուրբ ուխտն Վիրապին, որ էր ընդ իշխանութեամբ նախայիշեցեալ տեառն Գրիգորի, ուր սուրբ Լուսաւորիչն [..ե]րեքտասանամեայ երկարութիւն ժամանակին ի խորագոյն խաւարուտն արգելեալ բանտի[]ի մէջ չարաշուենչ մահաբուրիչ գժնդակաթոյնն սողնոց, ուրանաւր իբրու յարգանդի մաւր զմերն լինէր յղացեալ փրկութիւն, ուստի ելեալ ծագէր զլոյսն աստուածգիտութեան արեգակնաքատակ ծաւալմամբ յաշխարհս Հայոց, ծնանելով վերստին ի Քրիստոս ըստ մարգարէութեանն զազգ մի ողջոյն. ուրանաւր և մեզ եղև ժամանակ ինչ դեգերել ի դուռն աստուածազարդ այնր տաճարի՝ սակս կրթութեան ի մեծ վարդապետէն և յաստուածազգեաց առնէն Վարդանայ, որ ընդ այն ժամանակս ի վերայ ամենայն մասանց բարեաց, որով բոլորն [կա]տարի առաքինութիւն. և զուսուցապետութեանն եւս զգործ ի կիր արկեալ՝ ընդ առնելն լըծակցելով, ի դուռն սրբոյն Գրիգորի նստելով, զամենայն եկեալսն յաստուածայինն ուղղէր ճանապարհ։ Եւ անտի փոխեալ եկեալ առ մեծ իշխանն Քուրդ՝ և մեր զկնի նորա հետևեալ ժամանակ [ինչ ար]արաք յանուանեալն Սաղմոսավանք, ուր և զառաջինն աւարտեցաք հատոր սրբոյ մատենիս։ Եւ քանզի դէպ լինէր և անտի եւս փոխիլ նմա ի գործ բարւոք ուսուցչութեանն ի տեղի ուր տէր յաջողեսցէ՝ յուղարկեալք եղեալ մեր ի ստացողէ տառիս ի բուն տունս իւրեա[նց ի] մեծահռչակ հրեշտակակրաւն աստուածաբնակ սուրբ ուխտս Թեղիննեաց, ուր և յանկ իսկ հանաք զառաջարկեալս, բարւոք ընկալեալ զմեզ բարեբարոյ և սրբասէր քահանայի Սարգսի, սիրով և յաւժարամիտ կամաւք սպասաւորելով, զոր աղաչեմ յիշման բարւոյ արժանի առնել . . . . »

Այսպիսով ուրեմն մեր այս Ա ձեռագիրը գրուած է Հայոց .ՉԺԶ. թուին,= Փրկչական 1267-ին։

Բ ձեռագիրը Մայր—Ցուցակի № 1089-ն է (=Կարինեանցի 1069), թուղթ, բոլորգիր, երկիւջեան (=երկու սիւնակով), 27×18 հմետր։ Երես 112b ստորին լուսանցքում ունի «Յիշեսջիք զգծող սորայ զԳէորգ երէցն, որ Ժ տետր գրեաց ի գրոցս»։ Եր. 146b «... զստացող սորին զբրաբունի վէս Գէորգ.. և ինձ մեղապարտ գծողիս ողորմեսցիս, անուանակցի սորին»։ Եր. 254a յիշւում է մի ոմն Պետրոս «Զմեղաւք մեռեալ ոգիս Պետրոս կեցո՛յ տէր ծնողաւք և ա̃մ զարմիւք»։ Եր. 224a յիշւում են՝ Գէորգ, Պետրոս Ներսէս և Մովսէս։ Ուրիշ յիշատակարան ինձ չհանդիպեցաւ, ուստի և գրութեան ժամանակը մնում է անորոշ։ Անշուշտ շատ աւելի նոր է ժամանակով, քան Ա-ն։ Այս Զ-ի առաջին մեծ մասը Մովսէսի հինգ գրոց մեկնութիւնն է (Վարդան վարդապետի), նաև ուրիշ մեկնութիւններ, Եղիշէի, Եփրեմի և այլն։ Ցփի երկրորդ մասը, բոլորովին անջատ (երեք թերթ բաց՝ չգրուած թուղթ) առաջին մասից, սկսւում է մեր Ներքևի հրատարակութեամբ, յականէ—յանուանէ գրելով կարմրադեղով «Յաղագս շրջագայութեան երկնից, թէ որպէս իմաստասիրացն թուեցաւ. Անանիայի Շիրակացւոյ ասացեալ»։ Կարմրադեղով վերնագրերը, բացի առաջին գլխից, ամենուրեք բաց են թողուած. այդ պակասները, որ լրացնում ենք միւս ձեռագրից՝ գրուած են գծիկների մէջ (‖ ‖)։ «Երկնից Շրջագայութեանը» հետևւում է, ինչպէս և Ա ձեռագրում, կարմրադեղի համար բաց թողուած վերնագրերով, «Անանիայի Յաղագս Երկնի՛ն», յետոյ անընդմիջապէս «Պաւղոսի Աղեքսանդրացւոյ» վերևն յիշուած գրութիւնը։ Այս վերջին գրութիւնը, և՛ Ա և՛ Բ ձեռագրերում տպուածից աւելի բաւական մեծ մի յաւելուած ունի վերջում, Անանիայի քաղուածուների ձևով և բառերով։ Այդ յաւելուածին վերադառնալու մենք առիթ կունենանք։

Բացի այս յիշուածներից Բ-ն ունի և «Դաւթայ հայոց փիլիսոփայի, և Փիլիկահառմեցոց վարդապետի, և Հոմերեայ արուեստաւորի և Մովսիսի Քերթողի՝ խնդիր փափագման մասանց սիրոյ» անմիտ գրութիւնը, ուրիշ տոմարական գրուածներ, «Խորենացու» աշխարհագրութիւնը, առանց հեղինակի անուան (Խորենացու անունը աւելացրած է բոլորովին նորագոյն շղագրով) և Դուին քաղաքի «մղոնաչափութիւնքը», որին նոյնպէս կվերադառնանք Անանիայի վերագրուած երկերի այս հրատարակութեանց մէջ։

* * *

Ա և Բ ձեռագրի բաղդատութիւնից երևում է, որ բոլոր առաւելութիւնները Ա-ի կողմն են։ Բ-ը մի սխալաշատ, տգէտ և աղաւաղ գրչութիւն է, բայց հազիւ թէ անընդմիջապէս Ա-ից ծագած։ Այդչափ աղճատումների համար (տես հրատարակութեանս ընթերցուածները) անհրաժեշտ է ենթադրել մի շարք տգէտ ընդօրինակողների գործակցութիւնը։ Մի քանի հետաքրքրական ընթերցուածներից ամենից աւելի ուշադրութեան արժանին է Բ Զ-ի Ա գլխի 17 ընթերցուածը, որից տեսնւում է, թէ ինչպէս Ա-ի (կամ Ա-ի խմբից մի այլ ձեռագրի) լուսանցքագրութիւնը՝ Բ-ում մտել է բնագրի մէջ («կ ա մ ա ր, կ ա ղ ա պ ա ր, կ ա պ ա ր»)։ Թէև միայն Բ-ն ունի պահած Անանիայի յիշատակութիւնը, այսուամենայնիւ, մեզ թւում է թէ դժուար է կասկածի ենթարկել այս գրութեան Շիրակացուն պատկանելը։ Յամենայն դէպս այդպիսի կասկած յարուցանելու համար հարկաւոր են գրական փաստեր։ Մեր նպատակն է Անանիայի, կամ նրան վերագրուած, ինձ ծանօթ, բոլոր անտիպ գրուածները տալ ամենայն հաւատարմութեամբ ընթերցուածների, ձեռագրերի խմբերի և այլն., միով բանիւ ամենայն խղճմտութեամբ և մեր տ պ ա ր ա ն ի յ ա յ տ ն ի միջոցներով։ Եթէ երբեմն կարդարանան և իմ աւելացրած դիտողութիւնները, մերձեցումները, բաղդատութիւնները, այդ հօ՛ աւելի լաւ։

* * *

Անանիայի այս գրութիւնը ինձ յայտնի է միայն ԱԲ ձեռագրերից, * տպագրուած

* Վենետիկի Մխիթարեանների գրատան ինձ յայտնի մի համառօտ գրչագիր ցուցակից երեւում է, որ այնտեղ Անանիայի այս գրուածքից, առանց հեղինակի անուան, ունին 4 օրինակ։ Այդ ցուցակում նշանակուած է նաեւ մի օրինակ վերեւն յիշուած Գրիգոր Երուսաղէմացու գրութիւնից։ Հաւանականաբար այդ այնպիսի մի ձեռագրում է, որի տ ի պ ի կազմութիւնը նման է մեր Ա-ին։

աղբիւրներ ինձ յայտնի չեն, թէև այդ չէ ապացուցանում, որ այդպիսինները չկան. Ա՛յս միայն որոշ է, որ Զարբհանալեանը այս գրուածքի յիշատակութիւնը չունի (Հին. Դպր.), նմանապէս և Պատկանեանը. Սակայն միւս կողմից Հայկազեան Բառգրքի հեղինակները՝ անկասկած՝ ծանօթ են եղել այս գրութեանը և բառեր ունին քաղած նրանից, տես օրինակի համար թ ա ն ձ ր ե մ, ս ե ղ մ ա պ է ս, ս ի ք, յ ա ր դ գ ո ղ բառերի համար բերուած հետևեալ վկայութիւնները, առնուած «Ոսկիփորիկներից».

—«Հարաւային օդն թանձրէ զամպս (զմիժեամբք դիզանելով)». (Մեր հրատ. տ. 65)։

—Զիւնն (?) յորժամ սաստկապէս թափի ի վայր՝ տաղտարափ կոչի. և մինչ սեղմապէս՝ ձիւն կոչի». (Մեր հր. տ. 72)։

—«Ցրտալից սիք. սիք ի խոնաւուտ տեղեաց՝ երկրայինս». (Մեր հր. տ. 84)։

—«Ցաղագս փոթորիկ հողմոյ, զոր ի բաջաղանս և յառասպելս վիշապ հանել ասեն» (Մեր հր. տ. 92)։

—«Եւ որ յարդգողն կոչեն» (Մեր հր. տ. 104)։

Թէև կան և ուրիշ շատ բառեր այս գրուածքում, որ Հյկ. Բ–ը չեն մտել, ինչպէս օրինակ, ա յ լ ա խ ա ռ ն, շ ա ր ժ կ ո ծ ե լ, ը ն դ դ է մ դ ա ր ձ, ց ր տ ա լ ի ց, զ ի ն ո ւ ո ր ա պ է ս և լն.

***

Գանք ուրիշ գիտողութեանց. Չէ՞ ունեցել արդեօք Շիրակացին իւր այս գրութեան համար աղբիւրներ, և այն հայ աղբիւրներ, ինչպէս իւր միւս երկերում. Բարսեղ, Փիլոն իւր սովորական աղբիւրներն են, որոնցից քաղում է լիապէս. Ահա՛ մի քանի բաղդատութիւններ դրանցից.

Բարսեղ, Վեցօր. Դ. եր. 75
Վենետ. 1830։

«Նորուն ծովու խորշք եւ զոգք են... եթէ ծովն հիւսիսոյ, եթէ հարաւոյ, եթէ ծովն արեւելից եւ ծովն արեւմտից...

Ցաղագս Հրջագայութեան Երկնից.

Եւ զծովն մեծ զայն շուրջ պատեալ զաշխարհովս ասացին. և ի բազում տեղիս և կողմանս՝ յարեւելս եւ յարեւմուտս ի հիւսիսի եւ ի հարաւ եւ ի զոգս եւ խորշս ղիմեալ ծովացեալ.. (տ. 35—38.)։

ՓԻԼՈՆ *

«Երկնի յաւէտ շուրջ հիռ գալով. (Ժ. Բան.)—ինքն անշարժ եւ անյեղյեղուկ եկաց մնաց միշտ.

—Անյեղյեղ կայ մնայ.

Ցաղ. Հրջ. Երկնից.

Ահա և նա յաւետախաղաց և անդադար ունի զհիռ զալն զյաւեժաւէն, որով և նա շարժուն է յաւէտ. (տ. 138—9.). —Հարկ է անշարժ զոլ այնմիկ, որ շարժէ՛ն զնա. անյեղյեղուկ և անփոփոխ և անշարժ զաւրութիւն է նորա. (տ. 141—2)։—Եւ եթէ անյեղյեղ և առանց փխասու և կիրս ինչ կրելոյ է զաւրութիւնն այն.. (տ. 143—7)։

Անանիայի այս գրուածքում հաւանականաբար կան փոխառութիւններ և Ասկղեպիադէսի անունով մեզ հասած հատուածներից, որոնց ծանօթ լինելով միմիայն Զարբհանալեանից՝ անհնարին է ինձ բաղդատութիւններ անել (տես. Թարգմ. Նախ. 316—317.)։

Բայց այս բոլոր աղբիւրները երկրորդական և աննշան են՝ համեմատած սոյն գրութեան գլխաւոր և բուն աղբիւրի հետ, որի վրայ է ձեւուած Անանիայի այս ամբողջ գրու-

* Փիլոնի վերջին հրատարակութիւնը չունենալով ձեռքի տակ, այս վկայութիւնները բերում ենք Հայկ.Բռ.—ից: Այս փոքրիկ հատուածներից արդէն պարզ երեւում է նմանութիւնը. մեծ հատուածների բաղդատութեամբ փոխառութիւնն անշուշտ աւելի ակներեւ է դառնալու:

թիւնը։ Այդ գլխաւոր և մեծ աղբիւրն է «Արիստոտելի» Ցաղագս Աշխարհի յայտնի գրուածքը (Վենետ. 1833)։ Այդտեղից են առնուած Շիրակացու և գաղափարները և գրութեան ծրագիրը և բացատրութիւնները, տեղ տեղ մինչև անգամ բառացի։ Շիրակացին համառօտում է «Արիստոտելի» այդ գրութիւնը, բաց թողնելով յունարէն դժուարիմաց բառերը—տերմինները, աշխատում է աւելի հայերէն և մատչելի լեզուով պատմել, տեղ-տեղ նաև ի վնաս գիտական ճշտութեան։ Եթէ իսկապէս այս մեր հրատարակածը պատկանում է Շիրակացու գրչին,—իսկ այդ երևում է ձեռագրերի վկայութիւնից որ այս գրութիւնը դնում են Շիրակացու երկերի շարքում, գրուածքի նիւթից և մանաւանդ լեզուից, որ ամբողջ բացատրութիւններ և դարձուածներ ունի Շիրակացու միւս աշխատութիւններից *—այն ժամանակ անհրաժեշտ է դառնում ընդունել, որ Դաւիթ Անյաղթին վերագրուած՝ Արիստոտելի Ցաղագս Աշխարհի գրութեան հայ թարգմանութիւնը կանուխ է Շիրակացուց, որն և ընդարձակ չափերով օգտւում այդ հայ թարգմանութիւնից, ինչպէս կապացուցանեն ներքևի բաղդատութիւնները։ Ուրեմն և վերջերս հայագէտների մէջ երևցած ձգտումը՝ «Դաւիթ Անյաղթի» մի քանի թարգմանութեանց թուականը իջեցնել մինչև ութերորդ դար, և դեռ աւելի էլ ուշ, կորցնում է իւր հիմքը։

Արիստոտ. Ցաղագս. Աշխարհի

«Քանզի երկու ոմանք գոլորշիք ի սմանէ վերաբերեալ լինին շարունակապէս. գեր ի վերոյ մեր օդն անօսրագոյն է եւ ամենեւին անտես, եթէ ոչ ի սաստկութենէ ումեմնէ երևեալ լիցի. իսկ այն որ ի ջրոց եւ ի գետոց վերաբերեալ լինի» ընդ տեսութեամբ ստորանկանի։ Ի սոցունց մինն չոր է եւ ծխատեսակ յերկրէ ի վեր հոսեալ, իսկ միւսն խոնաւագոյն ի գէճ բնութենէն ի վեր ծխեալ։ Եւ ի սմանէ լեալ լինին մառախուղք եւ սառնամանեաց տեսակք եւ ամպք իսկ, եւ ձիւնաքերք եւ կարկուտք։ Իսկ ի չորոցն հողմունք եւ հնչմունք զանազանք, որոտմունք եւ փայլատակմունք. կիզմունք և ամպահարութիւնք, եւ այլ որ ինչ ընակակից է սոցունց» (եր. 610)։

Անանիա Ցաղ. Հրչ. Երկնից.

«Ու է ինչ որ դարձեալ իւրաքանչիւր երկիրս** գոլորշեաց, յորոց գործի վրնասք և աւգուտք։ Ու երկու շոգիք փղծկալիցք յաճախ և ստէպ յերկրէ աստի յաւէս ելանեն նրբապէս անտեսանելի աչաց, որ թուի թէ յարևելս յաճախ լինի։ Ու են դարձեալ, որ ի գետոց եւ յաղբերաց լինին։ Ուրևին ինձ այսպէս նմանութեամբ՝ զի մին է ցամաք ծխալից, եւ է նա ի հողմոց անտի, եւ միւսն խոնաւ է թանձրամած՝ ի գիճականութենէն զփղծուկն տալով և առնլով. եւ ի նմանէ լինին բալք եւ տեսիլք սառնամանեաց, ամպք եւ անձրեւք եւ ձիւնաքերք եւ կարկուտք։ Բայց ի շոգւոյ անտի՝ հողմք ազգի ազգի, որոտմունք եւ փայլատակմունք, կայծակն եւ հուր եւ որ ինչ նման է սոցին։ (տ. 41—50)։

Այսպէս կարելի էր ամբողջ գրուածքը, ծ ա յ ր է ծ ա յ ր, բաղդատել, բայց խուսափելով երկարութիւնից, այդ թողնում ենք այս խնդրով առանձին հետաքրքրուող մասնագէտներին։ (Համեմատիր Արիստոտել եր. 605=Ցղ. Հրչ. Երկ. գլուխ Ա., եր. 610=գլ. Ա. և Բ., եր. 611=գլ. Է., եր. 612=գլ. Է. Ը, Դ, եր. 613=Դ, Թ, եր. 614=Ժ, եր. 615=ԺԱ, եր. 621=ԺԲ ևլն)։

***

Իւր կողմից Անանիան իբրև աղբիւր է ծառայել իրենից յետոյ եկող բոլոր տոմարագէտներին։ Այս բանին վկայութիւններ բերելը մեզ շատ հեռու կտանէր։

---

* «Հուր Թաղկեալ» եւ նման բացատրութիւններ։ Բ ձեռագիրը, ինչպէս տեսանք, ունի նաեւ Շիրակացու անունը իբրեւ հեղինակի։

** Արդեօք չէ՞ աղճատուած։

Բաւական է այսչափն ասել, որ ինչ նշանակութիւն որ ունեցել է Խորենացու պատմութիւնը հետագայ պատմիչների համար, նոյնն է եղել Շիրակացին (իւր գրուածքների ամբողջութեամբ) հետագայ տոմարագէտների համար. Այս վերջինների ուսումնասիրութիւնը՝ առանց նախապէս Շիրակացու հետ լաւ ծանօթանալու՝ հաստատուն հիմքի վրայ չէ կարող գրուած լինել. Սարկաւագը, Վանականը, Կոզեռն, Սամուէլ և ուրիշ մանր ու խոշոր տոմարագէտներ շատ անգամ լոկ ընդօրինակողներ են Շիրակացու. Շատ մօտ յարընչութիւն պիտի ունենայ այս մեր հրատարակածի հետ Սարկաւագի «Բնախօսութիւն վասն շարժման կամ սասանութեան երկրի» գրուածքը, որ դժբաղդաբար չունինք ձեռքի տակ, ուստի և բաւականանանք մի բաղդատութեամբ, առնուած Հայկ. Բառ. վկայութիւններից.

| Սարկաւագ, Բն. վասն Շարժ. | Յղ. Հրջ. Երկնից. |
| --- | --- |
| «Վասն ի գեղջկաց ոգիտաց վիշապին անուանելոյ։ Ոչ եթէ վիշապ է փոշին մանուածոյ ի փոթորկէ գետնականէ յօդս խաղացելոյ, այլ հողմ ինչ է պտուտ կեալ։ Առասպելական ստութեանն ունկն դնել և հաւատալ մի՛ երբէք յանձն առնուցուս վիշապ զնա անուանողաց։ | Յաղագս փոթորիկ հողմոյ, զոր ի բաջաղանս և յառասպելս վիշապ հանել ասեն։ Փոթորիկն հողմ է, որ յերկրէ ի վեր ելանէ.... և այս է զոր վիշապ հանել ասեն (տ. 92—99)։ |

Զանց առնելով միւս տոմարագէտներից բերուած այսպիսի նման, փոխառնուած, հատուածների երկար շարքը, բաւականանանք դնելով վերջին նշանաւոր տոմարագէտներից մէկի՝ Յակոբ Ղրիմեցու, մի ամբողջ հատուածը, որ, կարելի է ասել, Յաղագս Հրջագայութեան Երկնից երկասիրութեան մի նոր խմբագրութիւնն է, հետաքրքրական լեզուով և բովանդակութեամբ. *

«Աստուծոյ աքանչելի արուեստն զմին բնութիւն իրացն ի բազումս բաժանէ, և բազում անուանք կոչին, զի ի Է տարերց մինն քամին է, որում օդ ասի. Եւ այս մինս ցեղուցեղ անուանք [91b] ունի, զի ասի հողմ, քամի, օդ. և աստի լինի՝ ամպն, ձիւնն, եղեամն, աղեղն որ իջանէ, որոտն, շանթիքն, ցօղմունքն, փայլակն, և այլ բազում իրս. ԹԷ ՈՒՍՏԻ՞ ԼԻՆԻ ԱՅՍՈՒՔԻԿ ՅՕԴ՞Ն ԵՒ Ո՞ՐՊԷՍ. Երկու գոլորշիք որ ելանեն յերկրէս ի վեր, որ ասին բուխար. և ի վեր բարձրանան նօսր և անտես աչաց. Մինն գէջ է և միւսն չոր. այն որ գէջն է յաղբիւրաց, ի գետոց և ի ջրոց ելանէ, և այն որ ցամաքն է՝ ի չոր և ի ցամաք գոլորշեացն լինի և ի հողմոց, և որպէս զծուխ վերանայ. Այն [որ] գէջն է՝ անտի լինի բալն, սառնամանիքն, ամպն, անձրևք, ձիւնք, կարկուտք. և այն որ չոր շոգին է, որ է բուխարն յաշխարհէս, անտի լինի ազգի ազգի հողմք, որոտմունք, փայլատակմունք, կայծակն, հրձգութիւն, և այլ որ ինչ սոցին նման է. ՎԱՍՆ ԲԱԼՈՅՆ. Բալն ի զօրութենէ ամպոցն է, զի յորժամ օդն թանձրանայ՝ ի բալ դառնայ. և է բալն քան զօդն թանձր, և քան զամպն նօսր, և ունի սակաւ մի գիջութիւն, որ խոնաւեցուցանէ զերեսս երկրի, զոր կոչեմք մաչախուղ. ՎԱՍՆ ՈՐՈՏՄԱՆ ԵՒ ԿԱՅԾԱԿԱՆՑ. Յորժամ հողմն բռնութեամբ հնչէ և ի մէջ ամպոցն մտանէ, յայնժամ զթանձր ամպն պատառէ և լինի ճայթմունք ի պատառմանէն, զոր և որոտ անուանեմք, և ի հողմոյն յիրար շփելոյն և ի ճնշելոյն հուր փայլէ, զայն փայլատակմունք ասեն և կայծակն, զի հուրն յամենայն արարածս խառն է, և աւելի յօդս. Եւ երբ հատանի հուրն յամպոյն, թէ թանձր ելանէ՝ յերկիր անկանի և վնաս առնէ, և թէ նօսր ելանէ՝ ոչ թողուն օդքն [92a] յերկիր, այլ ընդ օդն ցնդի անվնաս. ԹԷ Է՞Ր ՁՄԵՌՆ ՉԻ ՈՐՈՏԱԼ. Վասն զի ձմե-

* «Մեկնութիւն Տումարի, զոր խնդրեաց Թովմայ վարդապետն Մեծոփայ վանաց՝ աստուածասուրբ ուխտին։ Եւ սիրով զհայցուածն նորա կատարեալ Յակոբ վարդապետի Ղրիմեցւոյ». Ձ. № 2048, 15 Մայր Ցուցակի։

ուրն ամպն նօսրցեալ է, զի ձմեռն հիւսիսային հողմ հնչէ և այն նօսրցնէ զամպն։ Եւ թէ յի՞նչ պէտք է որոտալն. վասն զի թանձրութիւն ամպոցն և ի բռնութենէ հողմոցն չկարէ անձրևն յամպոց ի վայր հոսիլ։ Իսկ ի գոռալն և ի պատառիլն թուլանայ հաւասար և արկանէ զանձրև. և զոր օրինակ մայր զմանուկն ծնանի և մեծաձայն գոռայ, և վասն այն գոռայ, զի զհոգին յինքն քարշէ, որ զչնչական երակքն նեղէ, և զմանուկն ի վայր բերէ և ծնանի։ Նոյնպէս և երկիր սառուցեալ և պաղեալ է ի ձմեռնային ժամանակն և պնդեալ զբնութիւն հողոյն, վասն այսորիկ պիտոյ է ձայն որոտալոյն, զի թուլասցի բնութիւն հողոյն, և բոյսք և սերմանիք յերկրէ ի վեր բընանիցին և ծառք ծաղիկս փթթեսցեն. և ամենեքեան ի ձմեռնային կապանացն ի բաց արձակին։ ՑԱՂԱԳՍ ՉԻՒՆԻ ԵՒ ԱՉՐԵՒԻ։ Ցորժամ արեգակն ի հարաւային կողմն ցածանայ ի խոնարհ, յայնժամ հիւսիսային հողմն զօրանայ, և զօդն յիւրում խառնէ և թանձրացնէ, որ ամպ լինի և կորատի և ի վայր հոսի սպիտակ և փրփրատեսակ. զի ցուրտ քամին զնօսրութիւն ջրոյն այսպէս առնէ։ Երբ թանձր և մեծ թափի ի վայր այնոր տաղտարափ ասեն, և որ նօսր է և մանր՝ այն ձիւն կոչի։ Իսկ ի գարնան ժամանակի և ամառն և աշունն օդն ժողովէ զջուրն ի ծովէ և ի գետոց և առեալ յերկրէ ի վեր բարձրանայ, և ի քաջ ամպոց թօթափմանէ լինի անձրև, զի ի գարնան ժամանակն օդն պարարտանայ ի գիջութենէ [92b] ջրոյն և յարեգականն ջերմութենէն թանձրանայ և խոնարհի ի ծովն, և առեալ բարձրանայ, զի հողմ ի ներքոյ անցեալ առեալ տանին և հողմոյն գոռալովն և որոտալովն օդն պատառի և թուլանայ և զանձրև ի վայր հոսէ։ ՑԱՂԱԳՍ ԿԱՐԿՏԻՆ։ Կարկուտ լինի ի սաստիկ և ի ցուրտ քամոյն, որ շնչէ ի հիւսիսոյ կողմանէ, և ի սաստիկ փչմանէ հողմոյն ոլորելով բոլորէ և պնդէ զնօսրութիւն ջրոյն և շաչելով յերկիր թափէ, է որ ուժով և խիստ, և է որ նուազ. և այս լինի ի խրատ և ի պատուհաս մեղուցելոցս։ ԹԷ ՈՒՍՏԻ՞ ԼԻՆԻ ՑՕՂՆ ԵՒ ԵՂԵԱՄՆ։ Լուսաւորքդ օդով զջուրն ծծեն և ի վեր քարշեն. երբ արեգակն ծագէ թուլացնէ զօդն՝ և այն՝ զոր մնացեալ է յօդն ի գետին իջանէ և ցօղ կոչի այս։ Իսկ ի ցուրտ ժամն թերասառոյց լինի և կոչի եղեամն։ ԹԷ ԶԻ՞ՆՉ Է ԱՂԵՂՆ, ՈՐ ԻՋԱՆԷ, ԵՒ ԱՍԻ ՏԷՐՈՒՆԻ ԳՕՏԵԱԿ։ Պատճառն աղեղն իջանելոյն գիջութիւն օդոյն և ջերմութիւն արեգականն է, զի ի փարատել անձրևին՝ գիջութիւն որ յօդն է մնացեալ և արեգականն ջերմութիւն յիրար խառնին։ Օդոյն գիջութիւն ի ներքուստ և արեգականն նշոյլքն ի վերուստ միաբանին և ի նօսրութիւն օդոյն գոյնագոյն և երփներփն երևի կամարաձև, որպէս զերկնային զգունդն. Զի գոյն երկրիս և կանանչագեղ բուսոցն և ջրոյ և հրոյ յիրար խառնին և այնպէս երևին։ Թէ մէկ մի է գօտին՝ որ երևի, նշան գագարելոյ անձրին է և պարզելոյ, և թէ՝ երկու երևի, այլ և այլ գիհ, զյորդ և զսաստիկ անձրև նշանակէ։ Եւ ի սկզբանէ աշխարհի էր սա, զի հետևանք է տարերցս, որպէս ծուխն հետերթանք է հրոյ, որ քամի գէջ խոնաւութիւն ի հրային կրակոյն [93a] և ապա յստակի բոց հրոյն. վասն այսորիկ զսա ետ աստուած նշանս ի յորդութեան անձրևացն գագարման։ ԹԷ ԶԻ՞ՆՉ Է ՀՈՒՐՆ, ՈՐ ԾԵԿՆԻՑ ԱՆԿԱՆԻ, ԵՒ ՔԱՆԻ՞ ԱԶԳՔ ԵՆ ՍՈՒՔԱ։ Է ազգ մի, որ շանթիք ասեն, որ ի հրեղէն երկնից կոտրատի և ի վայր հոսի և չգագարի ուրեք, այլ յորժամ անկանի, ծակէ զթանձրութիւն երկրի և զոր ինչ գտանէ՝ այրէ և ընդ թափն ի վայր անցանէ ի ներքի կիսագունդն յիւր ազգակիցն, ուստի անկեալ է։ Եւ է ազգ մի՝ յորժամ ի սաստիկ ամպոցն հողմով ծովն խառնակի, որ ատակ ծովուն և աւազն յերեսն շրջի և օդն առնու զաւազախառն ջուրն և ի վեր վերացնէ ջրովն և տանի ի բարձր ի հըրախառն և ի տաք օդն շփէ և վառէ որպէս զհուր և ի վայր թափէ, և յորժամ յերկիր հասանի՝ յոր ինչ դիպի՝ այրէ և անցանի, և մնայ որպէս երկաթի քափշայ. Եւ է ազգ մի, որ ասեն թէ աստղ թռաւ. և աստղն չի թռչիլ՝ այլ յորժամ ընդ հրջագայ պարունակս երկնից հնչէ և սաստիկ արագապէս անցանէ, ընդ որ գնայ՝ զօդըն, որ տաք է և հրախառն, որպէս ձոր պատառէ, և երկայնութեամբ երևի, և թուի թէ՝ աստղ թռաւ։ Եւ է ազգ մի, որ ի պատառել օդոյդ ի սաստիկ հողմոյն՝

վերին լոյսն հրակերպ երեւի, և օդն որ պատառեցաւ՝ յիրուր գալն և ի կցիլն ծածկի գարձեալ, և մեք զայսոսիկ ասենք թէ աստղ թռաւ։ Նոյնպէս է և այն, որ կայծկտալ ասեն, զի յորժամ ամպն պատառի՝ ի գռալոյն որոտն լինի։ Եւ յիրուր շփելոյն կայծակն լինի, զի որպէս հրաշան երկաթն որ զկայծքարն բախէ՝ ելնէ ձայն և ելնէ հուր։ Նոյնպէս երբ հողմն զամպն պատառէ՝ ի պատառելն [93b] զորոտն առնէ և հողմն յամպոյն հուր հանէ. և ի տեղի ուր անկանի՝ վնասէ։ Յառաջ որոտն է և ապա կայծակն, բայց մեք յառաջ զհրոյն լոյսն տեսանեմքև ապա զորոտն լսեմք, զի աչքն այլ սուր է քան զականջն, և ակն զհեռուն տեսանէ և ականջն զմօտն լսէ. վասնայնորիկ զլոյսն ի հեռուստ տեսանեմք և յորժամ ձայնն ի վայր հասանի և մօտի մեզ՝ ապա ականջն լսէ։ Եւ այս յորժամ ի պարզ ժամն ելանէ՝ թռուցած աստղ ասեմք։ ՎԱՍՆ ԼՈՒՍՆՈՅՆ ԲԱԿԱՌՈՒԹԵԱՆՆ։ Թանձր օդդ, որ ունի բոլոր զճառագայթ լուսնին և նշոյլքն ի դուրս ելեալ ընդ թանձր օդն՝ բոլորակ լինի, և է նշանակ ամպոց» (Զ. 2048, 15 եր. 91a—93b).

***

Այս թեթեւ գիտողութիւններից երեւում է նորից այն ակներեւ ճշմարտութիւնը, որ մեր գիտական մատենագրութիւնը, ամբողջապէս փոխ առնուած քրիստոնեայ Արեւմուտքից (գլխաւորապէս Բիւզանդիոն), շարունակւում է մշակուել, կամ աւելի ճիշտ՝ պահպանուել և ընդօրինակուել զանազան հաւաքագրող—կոմպիլատորների, մեկնիչների, դասատու—վարդապետների ձեռքով, հետզհետէ նսեմանալով ճիշտ այն չափով, որ չափով որ լուսաւոր Արեւմուտքի հետ յարաբերութիւնները դժուարանում են։ Մեր ոգիտագոյն դարերը համապատասխանում են ճիշտ այն խաւար շրջաններին, երբ այդ յարաբերութիւնները կատարելապէս ընդհատւում են։ Եւ մեր վերածնունդը սկսւում է այդ գիտական յարաբերութիւնների վերսկսելովը։ Արեւմուտքից պէտք է սպասենք ամեն բարիք, ինչպէս որ Արեւմուտքից ստացանք քրիստոնէութիւն, գիր, մատենագրութիւն, գիտութիւն, ազգային գիտակցութիւն, մարդավայել աշխարհահայեցողութիւն։ Ճշմարիտ է, որ մեր մեկուսացած, բարբարոսների մէջ կղզիացած դիրքում, քրիստոնէութեան սահմանածայրում, Արեւմուտքի սէրը նստեց և մինչեւ այսօր էլ մեզ շատ թանկ է նստում, բայց մեր պատմութեան, մեր ամբողջ գոյութեան ներքին իմաստը այդ մաքառման մէջն է, երբ զոհւում է անասնականը, մարմնաւորը, հոգեկանի և գաղափարականի համար։

29 Յունիսի.

Գալուստ Տ. Մկրտչեան



## Ա. ՑԱՂԱԳՍ ՀՐԺԱԳԱՑՈՒԹԵԱՆ ԵՐԿՆԻՑ՝ ԹԷ ՈՐՊԷՍ, ԻՄԱՍՏԱՍԻՐԱՑՆ ԹՈՒԵՑԱՒ. 2 || ԱՆԱՆԻԱՑԻ ՇԻՐԱԿԱՑԻՈՅ ԱՍԱՑԵԱԼ. || 5

Գործք աստուծոյ մեծամեծ են[4] ասէ Իսրայէլի թագաւորն Դաւիթ, և զամենայն ինչ իմաստութեամբ արարեալ պատմէ աստուածային ստացուածոցս գոյս.[5] զի են՝ որք ի տեսութեան աչաց են, և են՝ որք յիմանալեաց քննութեան։[6] Արդ վերին զայն երկին, զոր յոյնք եթերն[7] կոչեն և քաղդէացիքն հուր թաղկեալ, որ կոչի հրատ բոցեղէն. զի է հուր՝ որ առանց նիւթոյ[8] է, պարզ ըստ այլախառն[9] շարադրական մասինն, զի չէ յուռեքէ, այլ յոչընչէ. [Ա 452a] և ոչ ոք ի նմանէ յեղելոցս, և ոչ ոք ի վեր քան զնա, այլ ինքն յինքեան[10] առանձնացեալ՝ անհատանելի էութեամբ,[11] պարզ միութեամբ, տարածեալ զաւրէն վերնայարկի ձեղուան,[12] անթիւրելի շրջափակութեամբ, բոլորաձև հարթութեամբ զերկրաւս գնդանման,[13] անդադար և անյաղթելի շրջագայութեամբ երագապէս, անտեսանելի նիւթականութեամբ, իմանալի և եթ, որ յերկու կիսագունդս բովանդակի՝ ներքին և վերին՝ ըստ երկրիս դրի հանդէպ միմեանց։

Ծու ի ներքս փակեալ ունի զմեծս զայս զաշխարհ և զաստուկութիւն հողմոց[14]—զի յանկութիւն[15] է հրոյ և հողմոյ առ միմեանս—զի նորա[16] շրջապատութեամբն իբրև կա[մ]ար[17] իմն ձևանայ և աւդոցն անաւսրութեամբն[18] իբրև յաման ինչ ըմբռնեալ՝ որպէս ջուր ի խեցեղէն ինչ կամ ի նիւթեղէն աման ըմբռնեալ՝ պահի լուծութեամբ։

Այսպէս և հողմք ի սփիւռ[19] տարածմանէ ձևացեալ եղեն վերին երկնի շրջափակութեամբ։ Բայց ունի նա զերկիր շրջափակութեամբ և զջուր ի ներքոյ փակեալ, որք ծովք անուանին. որպէս զթաղկութիւն բալոյ նորա ծին է, այլ սա ծննդական ջրոյ,[20] որ լինի ի ճնշմանէ հողմոց։ Զի [ի] շարժկոծելն՝ կամ յորդորիւն կամ մեղմ՝ նա ըստ իւրաց յուզմանն, որպէս ի կենդանիսջն, թէ առաւելու հրայինն՝ նուազեցուցանէ զխոնաւայինն, և խոնաւումն բազմացեալ՝ զհրայինն պակասեցուցանէ։ Ընդ նմին աւդն՝ որ է շունչն՝ իբրաց բառնայ զջերմութիւնն,[21] վճարի ի կենդանութենէ մահուամբ։ Զի պիտոյ են զոյգխառնութիւնք[22] չորեցս այս, զոր աստուած խառնեաց ի միասին։

---

**Ա**

1 Ա «որպէ» 2 Բ «թվեցաւ» 3 Ա չիք 4 Բ «մեծամեծք են և զանազան» 5 Բ «ըստացուածոց ոգւոյս» 6 Բ «քննէութեաչ» 7 Բ «յոյնքն եթեր» 8 Բ «նիւթւոյ» 9 Ա շատ յաճախ ունի լ ի ւ ն ի փոխանակ փչիկով ղ ա ռ, 10 Բ «յինքենէ» 11 Բ «է բնութեամբ» 12 Բ «վերնայյարկի ձեղուանն» 13 Բ «գդանման» 14 Բ «հողմոյ» 15 Բ «յանգութիւն» 16 Բ «նորայ», այսպիսի ուղղագրութիւն շատ յաճախ Բ օրինակում 17 Ա «կա.ար», լուսանցքում աւելացրած է ենթադրաբար «պ»=կապար, նա և «կամար», «կաղապար»: Մենք ընտրում ենք «կամար» վարկածը. Բ օրինակն արդէն լուսանցքագրութիւնները մտցրել է բնագրի մէջ այսպէս. «իբրև կամար կաղապար կապար իմն ձևանայ»: 18 Բ «և ոդոցն անատրութեամբն» 19 Բ «ի սպիւռ» 20 Բ «ջրո է» 21 Բ «զջերմութիւն» 22 Բ «զոյքխառնութիւնք»:

## Բ. ‖ Յաղագս Անձրեւաց թէ զի՞նչ է:

Յաստուածային խորս իմաստութեան մարդկան մտածմունք ‖[1] ոչ կարացին իջանել, բայց որ զքննութիւնս երկրի վարժին ուսմամբ ըստ երիցս այս դիմաց՝ շրջելով և տեսութեամբ և լսելով կամեցան ոչ յամենևին անհասութեան թողուլ զարարածս։ Եւ զծովն մեծ զայն շուրջ պատեալ զաշխարհօս[2] ասացին. և ի բազում տեղիս և կողմանս, յարևելս և յարևմուտս, ի հիւսիսի[3] և ի հարաւ և ի գոգս [Բ 310b] և խորշս[4] դիմեալ ծովացեալ և անջրպետ կղզիք մնացեալք ի չորեսին կողմանս, յոր բնակեն բազում աշխարհք։[5] Եւ կէսք ի նոցանէ Ատլանտինէ[6] կոչեն զնա և այլք Ովկիանէ։ Որ ինչ փոփոխմունք յերկրիս [Ա 452b] կրին ի հողմոց և բերին ախտս[7] ըստ ազգի ազգի ցաւոց և առողջութեան անտի լինին։ Եւ է ինչ որ դարձեալ իւրաքանչիւր երկիրս զոլորշեաց՝ յորոց գործի մնասք և աւգուտք։ Եւ երկու շոգիք փղծկալիցք[8] յաճախ և սակաւ յերկրէ աստի յաւգս ելանեն նրբապէս անտեսանելի աչաց, որ թուի թէ յարևելս յաճախ լինի։ Եւ են դարձեալ, որ ի գետոց և յաղբերաց լինին։ Երևին ինձ այսպէս նմանութեամբ՝ զի մին է ցամաք ծխալից, և է նա ի հողմոց անտի, և միւսն խոնաւ է թանձրամած՝ ի գիճականութենէն զփղծուկն տալով և առնլով. և ի նմանէ[9] լինին բալք և տեսիլք սառամանեաց, ամպք[10] և անձրևք և ձիւնաբերք և կարկուտք։ Բայց ի շոգւոյ[11] անտի՝ հողմք ազգի ազգի, որոտմունք և փայլատակմունք, կայծակն և հուր և որ ինչ նման է սոցին։

## Գ. ‖ Յաղագս Բալոյ։

Բալ լինի ի նուաստութենէ ամպոց, ‖[1] զի յորժամ թանձրանայ՝ ի բալ դառնայ և յամպս՝ ամուլ և անծնունդ յորդաբուղխ[3] անձրևաց, զոր սակաւութեամբ ինչ խոնաւեցուցանէ զերեսս երկրի. զոր յոյնք ընդդէմդարձ ասեն սակս արգելլոյ[4] զարեգակնային ճառագայթս և զանձրևաց,[4] զոր աստուած կարգեաց[5] յաւգուտ մեր։

## Դ. ‖ Յաղագս Որոտման թէ[1] զի՞նչ է կամ ուստի:

Որոտումն լինի յորժամ վարին հողմք ‖[2] ի վերին բնութենէն[3] և ըմբռնեալ ի միջոյ ամպոյ[4] ի հողմ ինչ և սաստկապէս ի բաց պատառել ամպոց՝ լինին[5] ճայթմունք և որոտմունք։ Եւ ի ճնշել հողմոյն հուր հատանի, զոր փայլատակմունս ասեն. զի ամենայն արարածք հուր ունին յինքեանս, բայց ամպոյն խտագոյն է։ Մինչ հատանէ յամպոյն՝ թէ թեթև՝[6] անձրև ելանէ և նրբքին աւդն[7] ի վայր անցանէ, և թէ թանձր ելանէ և հանդիպի ումեք՝

---

Բ

1 Բ չիք. 2 Բ «զաշխարհով» 3 Բ «ի հիւսհսի» Ա «ի հիւսսի» 4 Բ «ի խորշ» 5 Բ «աշխարհք» 6 ԱԲ «անտղտինէ» 7 Ա «և հողմոց և բերեն ախտս» Բ «և հողմոց և բենախտս» 8 Բ «շոգիք փղցքալիցք» 9 Բ «ի նմանէն» 10 Բ «ամք» 11 Բ «ի շոգոյ»

Գ

1 Բ չիք 2 Բ «անծնունդս յորդաբուխս» 3 Բ «արգել լոյս» 4 Բ «զանձրևացս» 5 Բ «պարգևեաց»

Դ

1 Ա շատ անգամ հնագոյն ուղղագրութեամբ «թե, եթե» 2. Բ չիք 3 Բ «բնութե-

փչասէ. թէ անասուր[8] եղանէ՝ ոչ թողուն աւդք, յերկինս անդ ժողովլ անձինս։ Բայց յաւուրս ձմերայնոյ ոչ լինի այս, զի ամպքն նաւսրացեալ լինի[ն] ի հիւսիսային[9] աւդոցն. զի հարաւային աւդն թանձրէ զամպն։

## Ե. ‖ Յաղագս Ձեան։

Ձիւն լինի յորժամ ի հարաւակողմ խոնարհի ‖ [1] արեգակն[2] և հիւսիսային աւդն զաւրանայ և՝ թանձրագոյն աւդքն[3] ընդ միմեանս շփոթելով թանձրանայ. և ի բաց հոսեալ կտրատին մածուցեալ, ոչ կարացեալ դառնալ[4] [Ա 453a] ի ջուր։ Զի խստութիւն հողմոյ ոչ տայ[5] լուծանել ի նաւսրութիւն ջուրց. և յորժամ սաստկապէս թափի ի վայր՝ տաղտարափ կոչի, և մինչ[6] սեղմապէս՝ ձիւն ասի։

## Զ. ‖ Յաղագս կարկտի։

Կարկուտ լինի ի հողմոց, զոր ի թանձրացեալ ‖ [1] ամպոցն վերինն[2] բռնացեալ հանէ հողմոյ հիւսիսոյ, զոր ոլորելով բոլորէ ի խստութենէ և ի բաց հոսեալ յերկիր ընկենու. [Բ 311a] յորմէ և շաչիւն ելանէ, է որ ուժգնապէս[3] և է որ նուազապէս։ Բայց այլ ոչ ուստեք է՝ կամ յերկրի գոլորշեաց, կամ ի գետոց և յաղբերաց, կամ ի ծովուց, զոր կարգեաց իմաստութիւնն Աստուծոյ՝ որում ոչինչ անկարանայ, այլ ակնարկելով նորա հաստատեցաւ ամենայն ինչ, զոր ոչ ոք կարէ հասու լինել ստուգապէս։

## Է. ‖ Յաղագս Անուանց հողմոց։

Որ բարեխառնապէս լինին հողմք՝ ասեմք ‖ [1] ցրտալից սիք։ Եւ սիք ասել սովորութիւն է. որ ի խոնաւուտ[2] տեղեաց ինչ շնչէ՛ն[3] երկրային ասեն, և որ ի հովտաց ելանէ՝ հովտային։ Եւ որ ի գետոց ելանէ կամ յաղբերաց[4] կամ ի ծովէ՝ ջրային ասեն։ Արևելեանն ի ձմերան[5] ժամանակի յոլով լինի և արևմտեանն՝ յամառնային, և հարաւայինն ի հասարակ աւուրսն։ Բայց է, որ ի գարուն և յաշուն և ի ձմերան լինի։ Եւ են ի սոցանէ որ ուղորդ շնչեն և են՝ որ զառեղեաւքն[9] պատին։ Եւ որ սաստիկքն են՝ մրրիկ ասեմք, որ յանկարծակի վերուստ ի վայր հոսին, և մառախուղ զլերամբն[7] պատեալ լինի։[8]

## Ը. ‖ Յաղագս փոթորիկ հողմոյ, զոր ի բաշխաղանս եւ յառասալելս վիշապ հանել ասեն։

Փոթորիկն հողմ է, որ յերկրէ ի վեր ելանէ, ուր վիհք ‖ [1] ինչ հատեալ լինին, ի քակ և ի խոռոչացեալ տեղեաց ինչ, որ ի փող անկեալ ընդ երակս երկրի և ել ինչ գտեալ՝ միաժողով ի վեր դիմեալ թանձրացեալ ամ-

---

նէն» 4 Բ «ամբոյ» սոյն ուղղ. և յետոյ. 5 Բ «լինի» 6 Բ «թէ թեւթէ» 7 Բ «և ներքի աւթն» 8 Բ «նաւսր» 9 Բ «զի հիւսւսային»

Ե

1 Բ չիք 2 Բ գաղափարագիր ԱԲ գրեթէ միշտ հին ուղղագրութեամբ «հիւսւս, հիւսւսային» 3 Բ «աւդն» 4 Բ «դառնա» 5 Բ «տա» 6 Բ «յինչ» Ա «ինչ» լուսանցք. նոյն գրչով «մ».

Զ

1 Բ չիք 2 Բ «վերին» 3 Բ «ուժգնապէս»

պով աՀագին դղորդիւնս Հանէ, մինչև զմայրիս յարմատոց ի բաց Հանել և վէմս[2] խլել։ Եւ զինչ գտանէ՝ աՀագին ձայնիւ վերացուցանէ և ընկենու յերկիր. և այս է, զոր վիշապ Հանել ասեն։

### Թ. ‖ Յաղագս որ յաւդ նշան լինի ալէսալէս:

Բազում և զանազան տեսիլք որ յաւդ լինին, ‖[1] է որ շանթ ասեն և է որ կայծ, և է որ Հուր, և է որ փայլակն, և է որ սիւն Հրոյ։ Է՝ որ յարևմտից կողմանէ ելանէ և է որ յարևելից. է որ ի Հարաւոյ և է որ ի Հիւսիսոյ։ Եւ որ յարդագողն կոչեն [այսպէս][2] լինի. գայ յաւդոց [Ա 453b] թանձրացեալ, դուզնաքեայ[3] զինուորապէս ունելով կերպարանս։ Եւ է որ երբեմն անՀաստատ լինել և երբեմն ոչ լինել։

Բայց աստղ որ ձգի յաւդսդ՝ ի շփելոյ Հողմոց լինի. է որ յերկար լինի չըթափեալ[4] ի բաց Հրոյն և է որ առ ժամայն թափեալ լուծանի. և է որ խստութեամբ ի բաց թաւթափեալ՝ երկայն ճանապարՀաւ երթեալ[5] կորնչի։ Եւ բակդ[6] լուսնի որ լինի՝ այդ թանձրացեալ աւդ է, որ ունի զճառագայթըս նորա, ելեալ ի դուրս նշոյլք՝ սակաւ բոլորակ լինի. դուշակէ ամպոց։

### Ժ. ‖ Յաղագս Աղբերաց Բնութեան:

Աղբերացն բնութիւնք են այսպէս. ‖[1] յաւուրս ամարայնոյ բարձրանայ արեգակն[2] և Հալածի Հիւսիսական աւդն ի ներքոյ երկնից, ազդեցուցանել զիւր ցրտութիւնն ի ներքոյ երկնից, որով Հովացեալ լինի աղբերաց բնութիւն, որ ի վեր բղխէ։ Եւ ի Հարաւ իջեալ արեգական՝[3] յամեալ ընդ երկրաւ՝ ջեռնուն ներքին շտեմարանք ջուրց. զի Հարաւայինն ազդէ ի ներքինս [քան]զի Հիւսիսայինն բռնացեալ տիրանայ։ Նաև[4] մարդկան բնութիւնք ըստ երկրի [Բ 311b] գոյանան. զի ի ձմերանի[5] ջերմ լինի ներքին որովայն, դիւրաՀալ լինի կերակուրն և ի վերոյ մարմինն Հով, և յամարանի[7] ի վերոյ ջերմ ի ներքոյ Հով։ Զոր և իմաստունքն ի բժշկաց պատմեն զայս՝ Ասկլիպիդեայ և Հիպոկրատեայ ուսմանն[7] ճարտարապետքն ասացին։

### ԺԱ. ‖ Յաղագս Շարժման թէ[1] ուստի լինի:

Շարժումն լինի ի Հողմոց բռնութենէ, ‖[2] զի են որ ընդ խորագոյնս

---

Է

1 Բ չիք 2 Բ «ի խոնաւութէ» 3 Բ «շնչէն» Ա «շնչեն» 4 Ա «յաղբիւրաց» 5 Բ «ի ձմեռեան» 6 Ա «զտեղաւքն» 7 Բ «զլերամպն» 8 Ա «լինին».

Ը

1 Բ չիք 2 Ա. Հին ուղղ. «վեմս».

Թ

1 Բ չիք 2 Ա ունի մակակէտ՝ ցոյց տուող որ բառ է պակասում։ 3 Բ «դուզնայքեաւ» 4 Բ «չթափել» 5 Բ «երթալ» 6 Բ «բակտ».

Ժ

1 Բ չիք 2 Բ «բարձրանալոյ արեգական» Ա «արեգակն» բառը գաղափարագիր. 3 Բ «արեգակն» Ա գաղափարագիր 4 Բ «Նայև» 5 Բ «ի ձմերայնի» 6 Բ «յամարայնի» 7 Բ «ասկլիպիդեա և Հիպոկրատէս ուսմանն» Ա «յուսմանն».

գնան հողմք և ոչ կարեն շարժել զերկիր, այլ լոկ ձայն ածեալ գոչեն[3] զերկրաւ։ Եւ են դարձեալ որ ոչ կարի ընդ թանձրագոյնն[4] շարժեալ նմանապէս ձևով։ Եւ եթէ բռնացեալ ելս ի վեր գտանէ՝ յոլով քաղաքաց սպանումն գործէ և աւերումն շինուածոց։

Եւ է որ չգտեալ հողմոյն ելս անցանէ անդրէն ահագին ձայն ածելով և գրգիւնս երկրի, և ոչ ընդհանուր[5] շարժել, այլ ի տեղիս տեղիս, ընդ ժամանակս ժամանակս, այլ և այլ կողմանց, իբրև եղանակաւ իմն խաղացեալ գործոյն, է որ զաւրագոյն և է որ մեղմագոյն։

ԺԲ․ ‖ Արիստոտելէս ընդդէմ որոց ասեն աստուած զտարերսդ այսպէս առաջրէ:

Թէ գոլով սոցա շարժութիւն՝ յայլմէ զաւրու ‖ [1] թենէ ունին սոքա զշարժիլն, և եթէ է զաւրութիւն որ շարժէ զսոսա խնդ[Ա 454a]րելի է թէ ինքն անշարժ է թէ շարժուն։ Զի եթէ զհինգերորդ[2] էութիւնն ոք ասիցէ պատճառ շարժութեան սոցա՝ ահա և նա յաւետախաղաց և անդադար ունի զհիւ գալն զյաւեժաւն, որով և նա շարժուն[3] է յաւէտ և որպէս յայլմէ հարկիչ զաւրութենէ ունի զմշտաշարժութիւնն։ Եւ եթէ գուցէ[4] այնպիսի, որ զմեծն զայն շարժէ գոյակ՝[5] հարկ է անշարժ գոլ այնմիկ որ շարժէ՛ն զնա.[6] անյեղլեղուկ և անփոփոխ և անշարժ զաւրութիւն է նորա։ Եւ եթէ անյեղլեղ և առանց վնասու և կիրս ինչ կրելոյ[7] է զաւրութիւնն այն՝ նա է աստուած արարիչ և շարժաւղ զամենայն։



ԺԱ

1 Ա շատ անգամ հին ուղղագր. «թե, եթե», Բ «թէ» նաև յաճախ «էթէ».
2 Բ չիք 3 Բ «գոչեն» 4 Բ «թանձրագոյն» 5 ԱԲ «ընթանուր»

ԺԲ

1 Բ չիք 2 Բ «զհ․երորդ» 3 Բ «շարժումն» 4 Բ «գուցցէ» 5 Բ «գոյական»
6 Բ «շարժեն զնայ» 7 Բ «կրելւոյ».